







# ՊԱՏՐԱ՛ՍՏ ԱՐՇԱՎԻ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Արևն ելնում է լեռան կատարից,
Ալ վզկապները է ծածանում քամին,
Կանչում է ծանոթ կածանը հեռվից,
Շեփորն է հնչում. «Պատրա՛ստ արշավի»:

Պատրա՛ստ, պիոնե՛ր, քայլի՛ր անվարան
Արահետներով լեռնալանջերի,
Ուշ է մայր մտնում արևը ամռան,
Թող ուշ էլ լռի երգը շարքերի:

Թող կամքդ դառնա ժայռի պես ամուր,
Հոգիդ՝ հայրենի երկնքի պես ջինջ.
Երազներ բերի գետակը փրփուր,
Հեքիաթներ պատմի անտառը թովիչ:

Վաղը դու դառնաս գուցե երկրաբան,
Տիեզերական օդաչու գուցե,
Քիմիկոս, ռազմիկ և կամ այգեպան,
Կամ բևեռախույզ՝ օվկիանում սառցե...

Բոլոր ճամփեքով քայլի՛ր ու անցի՛ր,
Գրի՛ առ, քննի՛ր, հիշի՛ր ամեն բան,
Ինչ էլ որ դառնաս վաղը, իմացի՛ր՝
Այսօր է սկսվում քո վաղվա ճամփան:

Դե, ե՛լ, պիոնե՛ր, ուսապարկդ ա՛ռ,
Ու ճամփա՛ ընկիր վաղորդյան ժամին,
Տե՛ս, քեզ է կանչում կածանն արևվառ,
Շեփորն է հնչում. «Պատրա՛ստ արշավի»:

*Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԲԵՏԻԿՅԱՆԻ*

# ԲԱԺԱԿԸ ՁԵՌՔԻՆ ՔԵՌԻՆ

(Հեքիաթ ջրի մասին, որ չէր կարողանում հինգերորդ հարկ հասնել)

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Բարձր լեռան տակից ջուրն իր համար ճանապարհ էր գտել և սառնորակ աղբյուր դարձած՝ դուրս էր հորդում: Մարդիկ մի լայն խողովակով այդ ջուրը հասցրին քաղաք, լցրին հատուկ պատրաստած ջրամբարի մեջ: Ջրամբարից ջուրն այլ խողովակներով բաշխվեց քաղաքի շենքերին:

Մի առավոտ, ամեն օրվա նման, ջուրը ջրամբարից եկավ հասավ շենքին:

Շենքը հինգ հարկանի էր: Առաջին հարկում ապրում էր Փոշի Հայրիկը: Երբ ջուրն առաջին հարկ հասավ, նա հանեց ռետինե խողովակը, միացրեց ջրի ծորակին, պատշգամբով բակ հանեց և սկսեց ջրել բակը, որպեսզի փոշի չբարձրանա:

Մնացած ջուրը երկրորդ հարկ հասավ: Այստեղ էլ ապրում էին Ձմերուկ Պապիկն ու Չկնիկ թոռնիկը: Ձմերուկ պապիկը բացեց ծորակը, ջրի տակ մի մեծ ձմերուկ դրեց, որպեսզի սառչի, իսկ ինքը գնաց պառկեց բազմոցին ու սկսեց թերթ կարդալ:

Կիսով չափ պակասած ջուրը երրորդ հարկ հասավ: Այստեղ ապրում էր Մաքրասեր Մայրիկը: Նա անմիջապես ծորակը բացեց և սկսեց լողարանը ջրով լցնել կանացյան պետքերի համար:

Ջրի բարակած շիթը չորրորդ հարկ հասավ: Այստեղ ապրում էր Մոռացկոտ Տատիկը: Նա բացեց ծորակը, թեյնիկի մեջ մի քիչ ջուր լցրեց և գնաց ձեռագործը շարունակելու, իսկ ծորակը մոռացավ փակել, և ջրի բարակ շիթը շարունակեց հոսել:

Հինգերորդ հարկում ապրում էր Բաժակը Ձեռքին Քեռին: Նրան կարելի էր նաև Համբերատար Քեռի անվանել, նաև Ուշադիր, կամ Խոժոռ Քեռի, որովհետև համբերությամբ նստում էր ծորակի մոտ և դեմքը խոժոռած, ուշադիր նայում ծորակին, բայց քանի որ նստած տեղը երբեմն ննջում էր, ավելի լավ է նրան կոչենք Բաժակը Ձեռքին Քեռի, որովհետև ննջելիս անգամ բաժակը ցած չէր դնում: Հիմա նա մոտեցավ ծորակին, բացեց և բաժակը ձեռքին սպասեց: Ծորակը քրթմնջում էր, փնչացնում ու հազում, ասես ներսից կոկորդը քոր էր գալիս:

Ծորակը մի կուշտ քրթմնջաց, փնչաց ու հազաց և վերջապես լռեց, իսկ ջուրն այդպես էլ չեկավ: Բաժակը Ձեռքին Քեռին շարունակում էր սպասել:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ





# ՕԳՈՍՏՈՍԻ՛Ն

ՍԱՄՎԵԼ ԿՈՍՅԱՆ

Նկ. ՄԱՐԻՆԱ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ

Օգոստոսին
Են չեն լինում ստվերները,
Այլ՝ մուգ կարմիր,
Կանաչ, դեղին:

Ստվերներով բույն են հյուսում
Թիթեռները
Ծաղիկների շրթունքներին:

Շուտով Փոշի Հայրիկը բակը ջրեց վերջացրեց ու սկսեց ծառերը ջրել, որովհետև փոշին գետնից բարձրացել էր ծառերի կատարը: Չկնիկ Թռնիկը պապիկի ձմերուկը հանեց ծորակի տակից, և սկսեց տիկնիկի շորերը լվանալ: Մաքրասեր Մայրիկը լողարանի լիքը ջուրը բաց թողեց և սկսեց նորից լցնել, որպեսզի ջուրն ավելի թարմ լինի: Իսկ չորրորդ հարկում Մոռացկոտ Տատիկն այդպես էլ չմոտեցավ բաց ծորակին:

Կեսօրից հետո Փոշի Հայրիկն սկսեց իր ավտոմեքենան լվանալ, որովհետև փոշին, որ սկզբում գետնին էր, իսկ հետո բարձրացել էր ծառերի կատարը, հիմա էլ ծառերից ավտոմեքենայի վրա էր իջել: Ձմերուկ Պապիկը թոռնիկին քաշեց հեռացրեց ծորակի մոտից, ասաց, որ կմրսի կհիվանդանա, նորից ձմերուկը դրեց ծորակի տակ, իսկ ինքը գնաց թերթի մյուս երեսը կարդալու: Մաքրասեր Մայրիկը դարձյալ լողարանի ջուրն էր փոխում: Մոռացկոտ Տատիկը ճաշից հետո պառկել էր հանգստանալու, իսկ ծորակը դեռ բաց էր:

Բաժակը Ձեռքին Քեռին աթոռին նստած, կրծքով հենված լվացարանին, բաժակը պահել էր ծորակի տակ և աշխատում էր հաղթահարել քունը:

Շուտով մթնեց: Երևաց լուսինը, հետո աստղեր հայտնվեցին երկնքում, ապա շատացան, զարդարեցին ամբողջ երկնակամարը: Փոշի Հայրիկը մի վերջին անգամ ջրեց բակը, որովհետև փոշին, որ սկզբում գետնին էր, իսկ հետո բարձրացել էր ծառերի վրա, հետո էլ ավտոմեքենային իջել, հիմա նորից գետնի վրա էր: Ջրեց ու գնաց քնելու: Ձմերուկ Պապիկը, որ թերթում մեկը մյուսից ավելի հետաքրքիր հոդվածների հանդիպելով, այդպես էլ ձմերուկը կտրելու ժամանակ չէր ունեցել, հիմա ձմերուկը հանեց ծորակի տակից ու գնաց քնելուց առաջ մի վերջին անգամ թերթն աչքի անցկացնելու: Չկնիկ Թռնիկը տիկնիկի շորերը փռել էր չորանալու, իսկ ինքը տիկնիկին գրկած մուշ-մուշ քնել էր: Մաքրասեր Մայրիկը վերջին անգամ փոխեց լողարանի ջուրն ու պառկեց: Բազմոցի վրա քնած Մոռացկոտ Տատիկն արթնացավ, հիշեց, որ առավոտյան ծորակը բաց է թողել, փակեց ու գնաց մտավ անկողին:

Հենց այդ պահին էլ, առիթից օգտվելով, ջուրը փորձեց հինգերորդ հարկ հասնել: Բայց չկարողացավ: Ուժասպառ էր եղել: Եվ նա խողովակներով քաշվեց, վերադարձավ բարձր լեռան տակ, որպեսզի գիշերվա ընթացքում ուժ հավաքի և առավոտյան նորից քաղաք գա, շենքից-շենք գնա և... նորից հինգերորդ հարկ չհասնի:

Այնպես որ ծորակից միայն երեք կաթիլ ջուր ընկավ: Մեկն՝ այս հեքիաթը պատմողին, մյուսը՝ լսողին (մինչ ես պատմում էի, դուք՝ լսում, մենք ծարավեցինք), իսկ երրորդը՝ Բաժակը Ձեռքին Քեռուն: Բայց նա այդ չտեսավ: Քնած էր: Նա երազ էր տեսնում Սահարա անապատի մասին, ավելի ճիշտ, Սահարայում գտնվող փոքրիկ, կանաչ օազիսի մասին, որտեղ մշտադալար արմավենիներ կան և մի կապույտ-կապույտ լճակ: Երազում տեսնում էր Համարձակ, Անկոտրում ու Անխոնջ ճանապարհորդին, որը ջուր գտնելու հույսով լքում է հինգերորդ հարկի իր բնակարանը, բաժակը ձեռքին աշխարհից-աշխարհ թափառում, մինչև որ օր-ծերության վերջապես հասնում է Սահարա, գտնում այդ օազիսը, բաժակը թաթախում կապույտ լճակի զուլալ ջրի մեջ և կյանքում առաջին ու վերջին անգամ մի կուշտ խմում:

Բաժակը Ձեռքին Քեռին երևի հազարերորդ անգամ տեսնում էր այդ երազն ու ինչպես միշտ՝ երազի մեջ երջանիկ ժպտում:

# ԲՆՈՒԹՅԱՆ ՈՐԴԻՆԵՐԸ

Մ. ԼԱՎՐԵՆՏԵՎ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գնել էինք մի շեկլիկ հորթ, ճակատը՝ պեծիկ: Անունն էլ դրել էինք Փայլակ:

Այդ հորթի մասին է ահա, որ պատմելու եմ:

Հորթին արածացնելու համար հեռու տանելու կարիք չկար, հայրս անտառապահ էր, մեր տունը գտնվում էր անտառից մի հարյուր մետր հեռու, կանաչ մարգագետնում: Այնտեղ պես-պես ծաղիկներ կային՝ սպիտակ, դեղին, կապույտ, և այնպես գեղեցիկ էին, որ ես ժամերով նայում էի ու չէի կշտանում: Պառկում էի տաք գետնին և նայում ու նայում մեկ՝ ծաղկազարդ բացատին, մեկ՝ կանաչ անտառին, մեկ՝ կապույտ երկնքին: Հրաշալի էր: Հրճվանքիս չափ չկար: Իսկ անտառում, իհարկե, ավելի գեղեցիկ էր: Այնտեղ ո՛չ միայն ծաղիկներ կային, այլև սունկ, ազնվամորի, հաղարջ, մորի, կաղին, վայրի խնձոր, ուրիշ-ուրիշ շատ ու շատ բան: Հապա ինչպե՞ս են երգում անտառում թռչունները: Նստում ես կոճղի վրա և ունկնդրում: Երազանքների մեջ ես ընկնում. նույնիսկ մոռանում ինքդ քեզ: Իսկ խոտի մասին էլ ի՞նչ ասել, ի՞նչ անտառ առանց խոտի: Չորս կողմ խոտ է:

Ամեն առավոտ, արևածագին, Փայլակին տանում էի բանջարանոցից դենը՝ անտառի բացատը: Երկար պարանի ծայրը կապում էի թուրումնավետ լորենուն և գնում: Մայրիկիս հանձնարարությամբ պըտուղ էի հավաքում, հաճախ էլ վազում էի գյուղ՝ ընկերներիս մոտ: Գյուղը մոտիկ էր՝ երկու կիլոմետրի վրա:

Անցել էր մի քանի օր, գուցե շաբաթ, գուցե և ավելի՝ տասն օր: Մի անգամ գյուղում շախմատի խաղով երկար տարվեցի և տուն վերադարձա երեկոյան դեմ: Ճիշտ է, դեռ լույս էր, բայց արևն արդեն լեռների ետևն էր անցել:

— Ո՞ւր ես կորել,— դժգոհ հարցրեց մայրս, հենց որ դուռը բացեցի,— նորից գյո՞ւղ էիր վազել:

— Այո՛,— իսկույն խոստովանեցի ես:

— Փայլակին բերե՞լ ես:

— Հիմա կբերեմ,— ասացի:

— Շտապի՛ր, ընթրելու ժամն է,— հրամայեց մայրս:

Մոտենալով անտառին, ես իսկույն նոսր թփերի արանքից տեսա ինչ-որ մեծ բան... Բայց հեռվից որոշել, թե ինչ է տեսածըս, չկարողացա: Տնային կենդանի՞ էր, թե՞ վայրի գազան: Կանգնել է այդ կենդանին թե գազանը, թուրումնավետ լորենու մոտ, այնտեղ ուր կապել եմ Փայլակին, գլուխը երբեմն թափահարում է, բայց տեղից չի շարժվում: Որպեսզի գազանին չխրտնեցնեմ, չոքեցի և շունչս պահած, դանդաղ սողացի առաջ: Երբ ամեն ինչ արդեն պարզ երևում էր, աչքերիս չըհավատացի. լորենու տակ կանգնած էր վիթխարի, հզոր իշայծյամը: Իշայծյամներ ես առաջ էլ էի տեսել և զարմանում էի հիմա ոչ թե նրա, այլ մեր Փայլակի վրա: Կռացած և դունչը վեր պարզած, նա ագահաբար ծծում էր իշայծյամին: Իշայծյամն էլ ոչ միայն չէր դժգոհում, այլև, երևում է, նույնիսկ հաճույք էր ստանում դըրանից, լիզում էր հորթի մեջքը, կողերը, փաղաքշում էր նրան, մեկ-մեկ էլ բավականությունից փնչացնում էր:

Մեկ էլ իշայծյամը վտանգ զգաց. գլուխը վախեցած բարձրացրեց, լարվեց և կտրուկ հըրելով Փայլակին, նետվեց անտառի խորքը: Հորթը կատաղած նետվեց նրա ետևից: Սարսափած տեսա, թե ինչպես պարանը դուրս պրծավ նրա վզից և իմ Փայլակը վայրկենապես անհետացավ: Ես փորձեցի հասնել նրա ետևից, բայց շուտով հասկացա, որ այդ անհույս բան է:





Համարյա մինչև կեսգիշեր, քանի դեռ լուսինը չէր թաքնվել ամպերի ետևը, հայրս ու ես թափառեցինք անտառում, կանչեցինք Փայլակին, բայց մեր բոլոր աղաչանք-պաղատանքը նա թողեց անպատասխան։ Ե՛վ հետևյալ օրը, և՛ մի ամբողջ ամիս, ամեն օր մենք փնտրեցինք նրան։ Վերջապես հայրս ասաց.

— Վե՛րջ, կորա՛վ։ Իշայծյամը մեր Փայլակին տարավ։

Ա՜յ քեզ հրաշք, մտածում էի ես, ինչպե՞ս կարողացան մտերմանալ նրանք՝ վայրի իշայծյամը և ընտանի հորթը։ Հարցրի հորս.

— Գիտե՞ս ինչ,— բացատրեց նա,— այնտեղ մի արիկա որսագող կրակել, սպանել է իշայծյամի ձագ։ Ճիշտ այն ժամանակ, երբ դու հորթին արածացնելու ես տարել։ Այս իշայծյամը եղել է սպանված ձագի մայրը։ Դրա համար էլ նա կարոտով ու ցավով փաղաքշել է ուրիշի հորթին։ Մայրական զգացումը խոսել է նրա մեջ։ Հասկանո՞ւմ ես։ Մենք բոլորս, տղա՛ս, բնության զավակներն ենք։ Կենդանի աշխարհը իմաստուն աշխարհ է։ Հեշտ չէ նրան հասկանալը։

Շատ վշտացանք մենք, հատկապես մայրս, իսկ աշնանը գնեցինք ուրիշ հորթ և կորած Փայլակի մասին դադարեցինք մտածել։

Այդ տարի ձմեռը շուտ եկավ, ցուրտ էր, ձյունառատ։ Գիշեր ու ցերեկ փչում էր քամին, սարսափելի բուք ու բորաններ էին լինում, խելագար մրրիկի մեջ կորչում էին երկիր ու երկինք։

Մի երեկո մենք՝ հայրս, մայրս, ես, նստած լուսամուտի մոտ, նայում էինք դուրս՝ բքից մթնած փողոցին։

— Աստված չանի մեկը ճանապարհին այս բքի բերանն ընկնի,— ցնցվելով և ուսերի շալի մեջ փաթաթվելով, ասաց մայրս։

— Հա՜, բոլոր չար ոգիներն ապստամբել են,— համաձայնեց հայրս։

— Իսկ գազանների համար սարսափելի չէ, ձյունը փորում են ու մեջը քնում։ Տաք է, լավ է։

Հազիվ էի ես հասցրել արտասանել այս խոսքերը ձյան մեջ անցկացվող հրաշալի կյանքի մասին, երբ հանկարծ լուսամուտի տակ լսեցի բառաչ։

— Իշայծյա՜մը,— ձայնեց հայրս և վազեց մյուս լուսամուտի մոտ,— տեսե՛ք, տեսեք ո՛վ է այնտեղ։

— Աստվա՜ծ իմ,— բացականչեց մայրս, ձեռքերն իրար զարկելով,— իշայծյամի հետինը մեր հորթն է։ Վա՜յ խեղճեր։ Նրանք սոված են։ Փայլակը հազիվ է կանգնում ոտքի վրա։

— Ջո՛ւր տաքացրու նրանց համար և ալյուրի շփո՛թ պատրաստիր, իսկ ես խոտ տամ,— ասաց հայրս։

Իշայծյամը երկար ժամանակ դարպասի բաց դռնից ներս չէր մտնում։ Միայն այն ժամանակ, երբ հայրս թաքնվեց խոտի դեզի ետևում, իշայծյամը զգույշ, ռունգերը լայնացնելով և ստուգելով, թե վտանգավոր բան չկա՞ այդտեղ, մտավ մարագը և տեսնելով ծածկի տակի խոտը, գնաց դեպի այն։ Փայլակը, ոտքերը հազիվ փոխելով, հնազանդ քարշ եկավ նրա ետևից։ Նա այնքան էր ուժասպառ, որ խոտին հասնելուն պես նստեց։

Երեք օր բուքը մոլեգնում էր, երեք օր իշայծյամը հանգիստ էր պահում իրեն։ Չորրորդ օրը բուքը դադարեց, երևաց պայծառ, թեպետ և սառն արևը։ Իշայծյամը սկսեց անհանգստանալ, նորից քաշեցին նրանց անտառը, ազատությունը, իր ցեղակիցները։

— Հարկավոր է բա՛ց թողնել,— ասաց հայրս և բաց արեց դարպասի դուռը։

Իշայծյամը փողոց թռավ, նայեց շուրջը և ձայնեց Փայլակին։ Հորթը, որ այս օրերի ընթացքում փոքր-ինչ կազդուրվել էր, անվստահ շարժվեց դեպի դարպասը, բայց հայրս դարպասի դուռը վրա բերեց, և փախստականին քշեց տաք ախոռը, մյուս հորթի մոտ։ Փայլակը մի ամսում ուժ հավաքեց, դարձավ ուրախ. չարաճճի, սիրում էր վազվզել, տրտինգ տալ բակում։ Երևում է, որ անտառը հիշել չէր ուզում և երբեք ցանկություն չունեցավ գնալ այնտեղ։ Իսկ իշայծյամը բուք լինելիս դարձյալ մի քանի անգամ եկավ մեզ մոտ, մենք թույլ տվեցինք նրան բակ մտնել, նա ավելի համարձակ էր պահում իրեն, համարյա չէր խրտնում մեզանից։

Ամառը հայրս խոտ հնձեց և բլրեց բանջարանոցի այն կողմը։ Որպեսզի խոտը ձյան տակ չմնա, հայրս նրա վրա ծածկ պատրաստեց։ Երբ ձմռանը պատահում էր, որ իշայծյամը կեր չէր ճարում, գալիս էր այդ սարայը, կշտանում, երբեմն էլ մի քանի օր ապրում այնտեղ։

# ՆԱ ՇԱՏ Է ՍԻՐՈՒՄ ՆԿԱՐԵԼ

*ԼԻԴԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ*

Ավագը վեց տարեկան է: Նա այնքան լավ է նկարում, որ վերջերս նրա աշխատանքները ցուցադրվեցին Լուսաշխի տան սրահներում, այնուհետև մանկական պատկերասրահում: Այցելուները երկար կանգնում էին մանավանդ նրա «Տոն», «Ծաղիկներ», «Իրիկնամուտ», «Մեր տունը աշնանը», «Արծիվը և ուղղաթիռը», «Կարուսել» և այլ նկարների մոտ: Թվում է, թե մի կախարդական աշխարհ ես մտել, ուր պատերից քեզ են նայում քո կարդացած ու դեռ չկարդացած հեքիաթների հերոսները:

Ավագ Խաչատրյանի նկարների կողքին ցուցադրված էին նրա հոր՝ անվանի նկարիչ Զաքար Խաչատրյանի աշխատանքները, որոնք արվեստագետներին քաջ հայտնի են: Հայրը՝ հիսունն անց, որդին՝ դեռ դպրոցական էլ չէ: Կարծես մրցում են հայր ու որդի:

Ավագը ծնված օրից տեսել է հորը կապույտ կիսախալաթով, վրձինը և ներկապնակը ձեռքին: Ավագի ծնվելուց դեռ տարիներ առաջ մեծ Ավագը՝ պապը մահացել է: Նա քարտաշ վարպետ էր, նկարում էր, քանդակում և՛ քարի վրա, և՛ երկաթի ու փայտի: Իր գործիքները սեփական ձեռքով էր պատրաստել, մետաղե գործիքների վրա նախշեր էր արել, որպեսզի գեղեցիկ լինեն: Այդ գեղեցկության պգացումն էլ անցել է որդուն և թոռանը:

Ավագը ինքն իրեն չի կրկնում, նրա նկարած աղջիկներից ոչ մեկը մյուսին նման չէ: Նրա պատկերացման մեջ ամեն ինչ ունի սկիզբ ու վերջ: Եթե հայրիկը մարդու ոտքը չի նկարել, ուրեմն կտրել է, նա սկսում է լաց լինել. «Ինչո՞ւ ես ոտքը կտրել, հայրիկ»: Հայրը մորաքրոջ մի ձեռքը չի նկարել: «Հայրիկ, ես նկարե՞մ, դու մոռացել ես»,— ասում է նա:

Իսկական արեգակի տպավորություն է թողնում նրա նկարած արևը, թեև ճառագայթները սև-կապտավուն են: Ընդհանրապես նա սև ու կապույտ գույները շատ է սիրում: Երբ ժողովրդական նկարիչ Հովհաննես Զարդարյանը տեսավ Ավագի նկարները, հորն ասաց.

— Դու հո գիտե՞ս ինչ է սև գույնը, մուգի կամերտոնն է, ջունչ է տալիս իր ներկայությամբ:

Հայրը դժգոհեց, որ տղան շատ է նկարում, հնարավոր չի լինում պոկել նրան թղթերից ու ներկերից, Զարդարյանը մի քանի անգամ կրկնեց՝ բառերը հատու շեշտելով.

— Երեխային մի՛ խանգարիր, թող նկարի:

Փոքրիկ նկարիչն ունի իր աշխարհը, իսկ այդ աշխարհն այն է, ինչ որ առայժմ կարողացել է տեսնել, ինչի մասին պատմել են նրան ծնողները, մարդիկ: Նա նկարում է այնպես, ինչպես ուզում է, ոչ ոք չի խանգարում, չի միջամտում, նույնիսկ նկարիչ հայրը:

...Հայր և որդի Խաչատրյանների ցուցահանդեսը հարյուրավոր մարդիկ այցելեցին: Շատերն անկեղծորեն իրենց հիացմունքը հայտնեցին, ոգևորիչ խոսքեր գրեցին տպավորությունների գրքում, հաջողություն ցանկացան նրանց արվեստի մեծ աշխարհում: Ավագը դեռ տառերը չգիտի, որ կարդա այդ ամենը: Ասենք, նրան չի էլ հետաքրքրում այդ: Նա միայն մի բան է ուզում. նկարե՜լ: «Հայրիկ, գունավոր մատիտներ տուր, ֆլոմաստերներ, գուաշ, թուղթ, ստվարաթուղթ, ջրաներկ»:







# ՊԱՏՄՎԱԾՔ, ՈՐԻ ՎԵՐՆԱԳԻՐԸ

*ԱԼԵՔՍԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

4.

Փոքրիկի տեսած նոր քաղաքը նման է մեծ զբոսայգու: Ո՛չ տրամվայ կա, ո՛չ ավտոբուս, ո՛չ ավտոմեքենա, ո՛չ էլ փողոցներ: Միայն նեղ ծառուղիներ են, որոնցով երկու մարդ չեն կարողանա քայլել կողք-կողքի, միայն փափուկ նյութից պատրաստված, ասես թե հատուկ ննջելու համար պատվիրված, նստարաններ են:

Հավանաբար, հանգստյան օր է, որովհետև բոլորը միայն նեմում են ծառուղիներում և ննջում նստարաններին:

Փոքրիկը շրջում է քաղաքում ու զարմանում. ո՛չ ձայն կա, ո՛չ էլ նույնիսկ շշուկներ: Բոլորը զբոսնում են ինքնամփոփ, իրար չեն մոտենում, իրար մոտով անցնելիս հարց չեն տալիս, չեն բարևում:

Գուցե համրերի քաղա՞ք է, մտածում է Փոքրիկը: Բայց շուտով նա փոխում է իր կարծիքը այս քաղաքի մասին: Մոտիկից անցնողներից ոմանք բարձրացնում են հայացքները և դժգոհ նայում ծառուղում փռված խեցավազը խշխշացնող Փոքրիկի կողմը, նրա շտապող ոտքերին: Եվ Փոքրիկը զգում է, որ իր ոտնաձայները լսում են այս մարդիկ: Համրերը սովորաբար նաև խուլ են լինում, շարունակում է ինքն իր մեջ մտածել շփոթված Փոքրիկը: Իսկ սրանք նույնիսկ ոտնաձայներն են լսում: Ուրեմն, համր չեն: Երևի այստեղ արտակարգ դեպք է պատահել, և բոլորը մտածում են այդ մասին: Չէ, դժվար թե, նորից է մտածմունքների մեջ ընկնում Փոքրիկը: Եթե դեպք պատահեր, մարդիկ կհավաքվեին իրար գլխի, հուզված կխոսեին: Կքննարկեին դեպքի պատճառները ու հետևանքները, ինչպես որ վարվում են ամեն տեղ:

Որոնող և հետաքրքրասեր Փոքրիկն այլևս չի կարողանում դիմանալ անորոշությանը և դիմում է իր մոտով անցնող աղջկան.

— Ինչո՞ւ են ձերոնք առանձին-առանձին քայլում և չեն խոսում իրար հետ:

Աղջիկը պայուսակից մի բացիկ է հանում և լուռ մեկնում Փոքրիկին, հանգիստ շարունակելով իր զբոսանքը նեղ ծառուղով: Փոքրիկը արագ կարդում է բացիկի վրա նախապես գրված բառերը. «Ինձ կարող եք դիմել այն ժամանակ, երբ ես արթնանամ»:

Պատկերացնո՞ւմ եք Փոքրիկի վիճակը: Մնում է շշմած: Ինչպե՞ս կարող է մարդը քնած լինել, երբ քայլում է ծառուղով, բացիկ է հանձնում ուրիշին:

Խեղճ Փոքրիկին մի պահ թվում է, թե ինքը երազում է, թե այս զարմանալի քաղաքը իրական չէ: Նա կտրուկ շարժումներ է անում, վեր-վեր ցատկում, տրորում է աչքերը, քիթը, կծում շրթունքը, բայց ամեն ինչ շուրջ-բոլորը մնում է նույնը, ինքը մնում է նույն տեղում, նույն դիրքով կանգնած, անծանոթ մարդիկ շարունակում են նեմելով անցնել նրա մոտով, նստել հարմարավետ նստարաններին, ննջել, ինչ-որ գրոտել իրենց ծոցատետրերում ու նորից հանգիստ նեմել:

Օրն արդեն անցնում է, իսկ Փոքրիկը դեռ շփոթված շրջում է զարմանալի քաղաքում ու գլուխ չի հանում, թե ինչ է կատարվում այնտեղ: Քաղաքից դուրս տանող ամենակարճ ծառուղին որոնելիս՝ նա նորից է տեսնում այն աղջկան, որից ստացավ զարմանալի բացիկը: Աղջիկն այժմ անշարժ նստած է նստարանին: Հետո սթափվում է, գոհ ժպտում ինքն իրեն, ինչ-որ արագ-արագ գրոտում ծոցատետրում, ուրքի կանգնում...



Փոքրիկը արագ մոտենում է ժպտացող աղջըկան, քանի դեռ վերջինս չի լրջացել առաջվա նման ու չի սկսել իր մտասույզ զբոսանքը:

— Դուք արդեն արթնացե՞լ եք,— հարցնում է Փոքրիկը անվստահ:

— Այո՛,— պատասխանում է աղջիկը սիրալիր ու զվարթ:— Քեզ ի՞նչ է պետք:

Աղջիկը հանկարծ վախենում է իր ձայնից կ

# ՀԱՅՏՆԻ Է ԴԱՌՆՈՒՄ ՎԵՐՋՈՒՄ

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

Փոքրիկին հրավիրում է փայտաշեն տնակը, որի դռան վրա գրված է. «ՋՐՈՒՑԵԼՈՒ ՏԱՂԱՎԱՐ»:

Ներս մտնելուց հետո աղջիկը կրկին զվարթանում է և ասում.

— Դրսում խոսել չի կարելի. կխանգարենք քնածներին:

— Բայց չէ՞ որ նրանք քնած չեն,— հարցնում է Փոքրիկը:

— Նրանք երազում են: Ամեն մի շշուկ կխանգարի նրանց:

— Ինչի՞ մասին են երազում,— հարցնում է աշխուժացած Փոքրիկը:

— Ամեն ինչի:

— Դուք է՞լ էիք երազում:

— Այո՛:

— Ինչի՞ մասին:

— Ամեն ինչի: Ես քիչ առաջ երազում էի սև մազերով, կապույտ աչքերով, բարի ու համարձակ տղայի մասին:

— Որտե՞ղ է այդ տղան:

— Ոչ մի տեղ: Ես նրան տեսնում եմ միայն երազում:

— Ձեր քաղաքում չկա՞ սև մազերով, կապույտ աչքերով, բարի և համարձակ տղա:

— Կա՛: Շա՛տ:

— Իսկ ինչո՞ւ ես դու երազում, եթե այդպիսի տղաներ կան ձեզ մոտ: Միանգամից ընկերացի՛ր նրանց հետ և վերջ:

— Ես չեմ ուզում հրաժարվել երազելուց: Եթե ես ընկերանամ մեր քաղաքում ապրող տղաների հետ, ցանկանամ թիթեռ դառնալ նրանց հետ ու ճախրել, չի ստացվի: Իսկ երազում ամեն ինչ ըստացվում է: Երազում, երբ ես կարոտում եմ սև մազերով, կապույտ աչքերով, բարի ու համարձակ տղային, երբ ուզում եմ անմիջապես տեսնել նրան ինձ մոտ, ասում եմ՝ արի: Նա անմիջապես հայտընվում է: Ծառուղիներով անցնելիս ես երազում էի նրա մասին, հետո նստեցի, փակեցի աչքերս, կանչեցի նրան: Նա եկավ: Մենք ցանկացանք, որ մարդիկ անհետանան մեր աչքից: Նրանք անմիջապես անհետացան, և մենք մնացինք երկուսով: Մենք ցանկացանք արագիլներ դառնալ և դարձանք: Թռանք շատ երկրների ու ծովերի վրայով: Տեսանք նավեր, որոնք խորտակվում էին ալեկոծությունից: Ցանկացանք, որ փոթորիկը դադարի. անմիջապես դադարեց, և նավերը փրկվեցին խորտակումից: Մենք տեսանք համակենտրոնացման ճամբարներում տառապող մարդկանց և ձայն տըվեցինք. «Թո՛ղ անհետանա՛ն փշալարերը, բետոնե պարիսպները և զինված դահիճները: Տառապյալները թո՛ղ ազատվե՛ն»: Արգելքներն ու դահիճները անմիջապես անհետացան, և տառապյալներն ազատվեցին: Մենք թռանք բոլոր երկրների վրայով և ազատեցինք բոլոր տառապյալներին: Մեր աչքից ծպտված դահիճները ինքնաթիռներով ըսկըսեցին հալածել մեզ: Այդ ինքնաթիռների պոչերից ուռկաններ էին կապված և մեզ շուտով գցեցին դրանց մեջ: Մենք որոշեցինք մի լավ տանջել դահիճներին. դարձանք ամպի քուլաներ և դուրս սահեցինք ուռկաններից: Նրանք օդ բարձրացրին իրենց բոլոր ինքնաթիռներն ու հրթիռները: Մենք դարձանք ծովախեցիներ և սուզվեցինք օվկիանոսը: Դահիճները թաքստոցներից հանեցին իրենց բոլոր ռազմանավերը, ստորջրյա հրթիռներն ու սուզանավերը: Մենք դարձանք մրջյուններ և անհետացանք խոտերի մեջ: Դահիճները ոտքի հանեցին իրենց բոլոր ցամաքային զորքերն ու զենքերը: Երբ արդեն աշխարհի ոչ մի անկյունում չէին մնացել դահիճներ ու զենքեր, մենք ձայն տըվեցինք. «Թո՛ղ մոխի՛ր դառնան բոլոր դահիճներն ու նրանց զենքերը»: Եվ նրանք մոխրացան, անհետացան: Հետո մենք գանձեր փռեցինք մարդ-





# ԿԱՐԱՊԸ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Կարճ վիզ ուներ կարապն առաջ,
Առաջ դարձյալ կապույտ լճում
Լող էր տալիս, մեկ-մեկ հանկարծ
Հիացմունքով ձայնում-ճչում.

«Չկա՜, չկա՜
Ինձ պես չքնաղ
Չկա՜, չկա՜...»
Ու ամառվա մի պարզ գիշեր
Այս քերկրանքն էր երբ վայելում,
Հանկարծ լուսնի ժահիկը կեռ
Տեսավ լճի ջինջ հայելում:
«Չեղա՜վ, չեղա՜վ,
Ահա՜, ահա՜,
Ինձանից էլ
Չքնաղը կա...»
Այսպես խորհեց... ու երկարեց,
Ձգեց վիզը ջրի խորքում,
Ուզեց հասնել ու կտցել
Լուսնեղջյուրը ջրի ցոլքում:
Եվ շատ տանջվեց,
Բայց ուզածին իր չհասավ,
Եվ ի՞նչ շահեց...
Կարճլիկ վիզը... երկարաավ...
Եվ, ո՜վ հրաշք, նա դրանով
Էլ ավելի չքնաղացավ:

Նկ. ԿԱՄՈ ԳՅԱՆՋՅԱՆԻ

կանց առջև, ասացինք. «Վերցրե՛ք և բաժանե՛ք»: Ուշադիր հետևեցինք ու տեսանք, որ մարդկանց մեջ շատ կան ագահներ, անազնիվներ, որոնք ամեն բույն կարող են դառնալ դահիճներ: Մենք չուզեցինք նրանց մոխրացնել, քանի դեռ չէին դարձել դահիճներ, և ձայն տվեցինք. «Թող բոլո՛րը դառնան բարի և ազնիվ»: Այն ժամանակ շատերը ետ բերեցին իրարից խլխլած ու թաքցրած գանձերը և հավասար բաժանեցին բոլորին: Մենք նորից մարդ դարձանք և եկանք մարդկանց մոտ...

Փոքրիկն այնպես էր ոգևորվել ու տարվել աղջկա պատմածով, որ նրան թվում էր, թե ինքն էլ է արդեն գտնվում երազի մեջ: Եվ քանի որ նա հետաքրքրասեր է ու որոնող, նրա մտքում նորից են սկսում պտտվել մի քանի հարցեր.

— Իսկ ի՞նչ էիր գրում քո ծոցատետրում, երբ նստած էիր:

— Գրի էի առնում տեսածս երազը:

— Ինչո՞ւ:

— Երբ հնարավոր չի լինում երազ տեսնել, մենք կարդում ենք մեր գրի առածները և մեզ պատկերացնում անցած երազներում:

— Իսկ երբ սթափվում եք, չե՞ք զգում, որ ձեր քաղաքը շատ տխուր է:

Աղջիկը, պատասխանելու փոխարեն, հանկարծ արտասվում է:

Փոքրիկը ուզում է ներողություն խնդրել տված հարցի համար, բայց աղջիկը չի դադարեցնում հեկեկոցը, խոսելու հնարավորություն չի թողնում: Ծփոթված Փոքրիկը մի քանի սփոփիչ խոսքեր է մրմնջում հեկեկացող աղջկան, բայց աղջիկը ավելի ուժեղ է հեծկլտում և չի լսում նրան: Հետո աղջիկը պայուսակից հանում է մի ուրիշ բացիկ, մեկնում շփոթված Փոքրիկին և հեռանում արտասվելով:

Փոքրիկը արագ կարդում է բացիկի վրա գրված բառերը. «Քո հարցը ինձ զրկեց երազելու կարողությունից, և ես այլևս իրավունք չունեմ ապրելու երազողների քաղաքում: Ներողություն ինձ, որովհետև ես այլևս չկամ»:

Փոքրիկը անմիջապես դուրս է վազում փայտաշեն տնակից: Աղջիկը, որ հենց նոր դուրս եկավ տնակից, չի երևում, ասես օդ է դարձել:

Փոքրիկը վախենում է հարց տալ իր մոտով անցնող մարդկանց, որպեսզի հանկարծ նրանց ևս չզրկի երազելու կարողությունից: Նա շտապ հեռանում է այս զարմանալի քաղաքից, ծոցատետրում գրելով. «ԱՆՀԵՏԱՑՈՂ ԵՐԱԶԱՆՔՆԵՐԻ ՔԱՂԱՔ»:

# ՄԱԼԱԿԱՆ ՔԵՌԻՆ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Ինը տարիս նոր էր լրացել:

Վերադառնում էի Գոմաձոր գյուղից, ուր հյուր էի իմ քրոջը: Հասա մեր գյուղի դիմացի Կարճաքաշ կոչվող լեռնամասին: Սարերով էի գնում: Ու հիմա տրնքացող ոտքերով ցած եմ իջնում լեռան հյուսիս նայող լանջով: Այստեղ անտառը խիտ է, ծառերը երկնասլաց են, ու թեթև բորբոսի և ծառամուսկի հոտ է փչում: Նաև՝ խոնավության մեջ փտող կոճղերի և մահացած ծառերի ինձ ծանոթ հոտը:

Թեև օրը անամպ է ու պայծառ և արեգակը նոր է թեքվել մեր Պնդուկ սարին, բայց նրա ճառագայթները չեն թափանցում ծառերի խիտ սաղարթներից ներս և ձորակներում աղջամուղջ է տիրում:

Մտա մի փոքրիկ ձորակ, ուր մոռի տրորած-ջարդած թփեր կային և սև հաղարջենիներ: Հաղարջենին մարդահասակ թուփ է, բայց դարերով շարունակ կուտակվող ու փտող խաշամի բուսահողից մեր անտառներում այդ թփերն այնպես վայրենաբար են փարթամանում, որ դառնում են պկեռի ծառերի բարձրության և իրենց ճկուն ճյուղերը տարածում են չորս կողմ: Եվ ահա այդ ճյուղերից խաղողի սև ողկույզների նման կախկխված է հաղարջը, որին մենք «ղարախաթ» էինք ասում: Քաղի՛ր, կե՛ր հյութեղ ու թթվաշ ողկույզները, կե՛ր ինչքան կուզես:

Է՛լ վախենալու բան չունեմ, ներքևում մալականների Սլաբոդկա գյուղն է, ապահիր մի քիչ հաղարջ ուտեմ:

Մինչ ես ուտում եմ հաճույքով, նկատեցի, որ մենակ չեմ. ինձնից ներքև թուփը շարժվում է, խշտոց է լսվում: Ուրեմն այնտեղ էլ մոռ ու հաղարջ ուտող մարդ կա: Ճյուղերի մեջ մի պահ նույնիսկ երևաց նրա թուխ թիքը: «Լավ տեղ է ընկել մալականը... Հիմի պամբյուղը լցրած կլինի»,— մտածեցի ես ու ձայն տվի.

— Մալակա՞ն քեռի, վերև՛ արի, էստեղ շատ կա...

Պատասխան չկա, ճյուղը դադարեց շարժվել:

Մալականը չհասկացա՞վ իմ հայերենը, թե՞ վախեցավ:

— Վախի՛լ մի, վերև՛ արի,— նորից ձայնեցի ես:

Այդ տեսա, փոքր գոմշի չափ մի թուխ կենդանի դուրս եկավ թփուտից, դանդաղ վերև բարձրացավ ու պպզեց առաջս: Նայում է ինձ զայրացած, իսկ թուխ բերանի անկյուններում կարմրին են տալիս խժռածճմլած մոռն ու հաղարջը: Լեզուս կապ ընկավ, բերանս բաց արի, որ գոռամ՝ ձայն չի դուրս գալիս: Իսկ դա մրթմրթաց ինքն իրեն, կուլ արավ և՛ թուհ, մոռախառն կարմիր թուքը շպրտեց երեսիս: Թքեց, սիրտը հովացավ, մեկ-երկու անգամ ցածրաձայն գռռաց և կողքահանց, գողեգող ինձ նայելով՝ գնաց ծառերի արանքով:

Շատ վախեցա, կարծեցի վերջս եկել է, բայց մեկ էլ հիշեցի մեր գյուղի որսկանների խոսքը, թե՝ «Արջն իր ահից կգոռա...»— Դե որ գոռում է, ուրեմն նա էլ ինձանից է վախենում, էլ ի՞նչ եմ սրտաճաք եղել: Սիրտս տեղն ընկավ, մի կտոր փայտ շպրտեցի դրա հետևից ու ձորն ի վար ցած վազեցի, աչքս գցած մալականի տներին՝ ո՞նց եմ թռչում...



# Մ Ա Ր

ԳԵՎՈՐԳ ԶԱՐԵՆՑ



Երեկոյան մեր բազմանդամ ընտանիքը հավաքվեց սեղանի շուրջը ընթրիքի: Մայրս սեղանին դրեց աղով եփած կարտոֆիլը: Կերանք առանց հացի: Հաց չկար: Այս էլ քանիերորդ անգամ մեր տանը երեկոները հաց չէր լինում: Ներածից բան չհասկացանք: Էլի քաղցած մնացինք:

— Ոչինչ, երեխե՛ք ջան, իրիկվա կերածը կորած է,— կատակի տվեց հայրս:

— Դե հիմա գնացեք քնելու,— ասաց մայրս և գնաց անկողինները բացելու: Թեև օրը նոր էր մթնել, մենք անկողին մտանք: Հայրս և մայրս հարևան սենյակում ցածրաձայն վրուցում էին: Ականջիս հասած կցկտուր բառերից հասկացա, որ մայրս հորս համոզում է վաճառել այն քարե հայելին, որ ինքը բերել է հորանց տնից որպես օժիտ: Հայրս չէր համաձայնում.

— Աշխարհը մեծ է, մի տեղից մի դուռ կբացվի, հիշատակ է, թող մնա:

Թե որքան տևեց նրանց վրույցը, չիմացա: Առավոտյան երբ աչքերս բացեցի, մորս տեսա պատից կախված հայելու առաջ: Հայելու մեջ անդրադարձած նրա աչքերը խոնավ էին: Լուռ հետևում էի նրա շարժումներին: Նա խնամքով սանրեց երկար, գեղեցիկ մազերը, ապա երկու ձեռքով զգուշորեն պատից իջեցրեց հայելին, փաթաթեց իր ծաղկավոր գլխաշորի մեջ ու դուրս ելավ... Վերադարձավ առանց հայելու:

— Չէր ծախվում,— տրտնջաց մայրս,— ես երեք կիլոգրամ ալյուր էի ուզում, նրանք մեկ կիլոգրամ էին տալիս, ստիպված համաձայնեցի,— ու բացեց կապոցը: Գարու ալյուր էր՝ սև, թեփախառն:

Երեկոյան կուշտ կերանք: Մայրս չասաց, թե՝ շուտ պառկեք քնելու: Գնացինք խաղալու: Երբ տուն եկանք, հորս տեսանք պայծառ տրամադրությամբ: Նրան վերջին ժամանակներս այդպես ուրախ չէինք տեսել:

— Ապրեցի՛նք, երեխե՛ք ջան, ապրեցի՛նք,— բացականչեց նա ու ծոցագրպանից քառածալ մի թուղթ հանելով, մեկնեց ինձ: Դա մի գրություն էր, տրված շրջսովետի գործկոմի կողմից հարևան կոլտնտեսության նախագահին, հորս, որպես լավ աշխատողի, մի երինջ պարգև տալու մասին:



Մինչև հարևան կոլտնտեսության անասնապահական ֆերման երեք-չորս ժամվա ճանապարհ էր: Ձգձգան ցուրտ էր: Որպեսզի ոտքերս չմրսեն, տրեխներիս մեջ դարման էի լցրել: Փոքրիկ Գիքորի նման մերթ հորիցս առաջ էի ընկնում, մերթ՝ ետ: Ի՜նչ մրսել, կգում էի, որ նույնիսկ քրտնել եմ: Կեսօրին տեղ հասանք: Ֆերմայից անասունները դուրս էին հանել ջուր տալու: Նախագահը հորս ծանոթ դուրս եկավ:

— Խե՞ր լինի, ուստա՛, էս ի՞նչ քամի է քեզ մեր կողմերը բերել,— ջերմորեն սեղմելով հորս ձեռքը, ասաց նախագահը:

— Խեր է:— Ու հայրս ծոցագրպանից հանելով շրջգործկոմի որոշման հիման վրա կոլտնտեսության նախագահի գրությունը, մեկնեց նրան:

Նախագահը կարդաց ու դարձավ հորս.

— Ուստա՛ ջան, որ ինձ լսես, ա՛յ էն առաջից գնացող երինջը կվերցնես, դրա մայրը լավ կաթն ա տալիս:

Հայրս մոտեցավ մատնացույց արված երինջին, որ շոյի, երինջը գլուխը թափահարեց ու մի կողմ փախավ:

— Մարալ է անունը, ուստա՛, կանչի՛ր, կմոտենա,— ասաց նախագահը և առանց սպասելու հորս կանչին, ինքը փաղաքուշ ձայնով կանչեց.

— Մարա՜լ, Մարա՜լ, Մարա՜լ:

Մարալը ետ շրջվեց: Ընդառաջ եկավ նախագահին և լիզեց նրա պարզած ափը: Հենց այդ պահին էլ հայրս հետը վերցրած թոկը գցեց Մարալի վիզը:

— Խեր ու բարաքյա՛թ տա քեզ, ուստա՛, լավ ապրանք ա, տա՛ր, չե՛ս փոշմանի: Համ էլ ծանրած ա, մայիսին կծնի:

Մարալին առած՝ բռնեցինք տան ճամփան: Հայրս քայլում էր առջևից՝ թոկի ծայրը բռնած, իսկ ես Մարալի ետևից՝ ձեռքիս մի փոքր ճիպոտ: Մարալը ծիրանագույն էր, սուր-սուր պոզերով, եղնիկի աչքերի նման շեկ ու խոժ աչքերով: Ճանապարհին նա մի քանի անգամ բառաչեց, բառաչը լցվեց հանդ ու ձորերը:

— Հրաժեշտ է տալիս ընկերներին, ցավով է բաժանվում նրանցից,— ասաց հայրս ու շարունակեց.— Որ անասուն է, կարծում ես, բան չի հասկանո՞ւմ,



# Ո Լ Ը

Նկ. ՀԱՅԿԱԶՈՒՆ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

հասկանում է, էն էլ ո՞նց է հասկանում: Տարիներ առաջ մի կով ունեինք: Դրա հորթը սատկեց: Դարման լցրինք հորթի կաշվի մեջ, դրեցինք կովի առաջ, որ կարողանանք կթել: Կովը մեկ մոտ չէր թողնում, լիզում էր իր բալի մորթին, մղկտում: Տեսնեիր, թե աչքերից ինչպես էին թափվմ՛մ արտասուքները...

Իրիկնադեմին տուն հասանք: Եղբայրներս դուրս թափվեցին տնից ու սկսեցին պտտվել երինջի շուրջը:

— Հեռո՛ւ մնացեք,— սաստեց հայրս,— խամ աղբանք է, քացի կտա:

Մարալը շատ մարդամոտ դուրս եկավ: Մի քանի օրվա ընթացքում բոլորիս ընտելացավ, թողնում էր, որ շոյենք իրեն, ջուր ու խոտ տանք:

Մայիսի կեսերին Մարալը մի սիրունիկ հորթ ունեցավ՝ ճակատին սպիտակ նշան:

Մայիսի վերջին հայրս մեկ վերցրեց ու նրանց հետ սարը տարավ: Սարը երկու թաղամասի էր բաժանված: Մեր թաղամասում կաթնապտիչ չկար: Առավոտները մայրս կթում էր կովը և կաթը խառնելով նախորդ իրիկվա սերակալած կաթին, տալիս մեկ, որ տանենք հարևան թաղամասում պտելու: Այդ պարտականությունը դրված էր իմ և ինձնից փոքր եղբորս վրա: Մյուս եղբայրներս շատ էին փոքր: Ու մենք սիրով էին կատարում մեր պարտականությունը, մանավանդ որ պտած կաթի փրփուրը մեր բաժինն էր: Ջրտում վերջացնում էինք ու շտապում երկու թաղամասերի միջև ընկած ձորը, որով անցնում էր մեր թաղամասը բերող ճանապարհը: Չոքում էինք լիքը փրփուրով դույլի առաջ ու հերթով, իրար կպցրած երեք մատներով, ուտում կաթի տաք-տաք փրփուրը: Կաթնասերին ձեռք չէինք տալիս: Փրփուրն էր մերը:

Հուլիսի կեսերին մեկ մոտ սկսվում էր խոտհունձը: Հայրս վաղօրոք երկու գերանդի էր գնել ու պատրաստել: Նրանցից մեկը մեծ էր, մյուսը՝ փոքր:

— Էս փոքրը քեզ համար է, տղա՛ ջան, տեսնեմ ո՞նց ես հնձելու:

— Ինձ համա՞ր,— կարմացա ես,— բա ես խոտ հնձո՞ղ եմ:

— Կսովորես, կհնձես,— վստահ ասաց հայրս:

Առաջին անգամ գերանդին սրելիս՝ ձեռքս կտրեցի: Շատ արյուն գնաց: Հայրս տեսնելով, որ վերքս խոր չի, ծիծաղեց.

— Առաջին անգամ ես էլ եմ ձեռքս կտրել: Չվախենաս, ոչինչ: Հաջորդ անգամ զգույշ կլինես, չես կտրի,— և ինքն առաջ ընկնելով, սկսեց հնձել: Ինչպե՜ս էր հնձում...

Մի երկու շաբաթ տևեց խոտհունձը: Երբ սայլերով խոտը տեղափոխեցինք ու դիզեցինք մեր բակում, դեզը սարի չափ բարձրացավ:

Աշնանը սարից իջանք: Խոր աշնանն արդեն Մարալին կապեցինք գոմում: Հիմա էլ հարկավոր էր ամեն օր, օրական երեք անգամ, խոտ տալ նրան ու իր հորթին, նրանց տակը մաքրել, ջուր բերել նրանց համար: Այս ամենը մենք՝ երեխաներս էինք անում, առանց հայրիկի և մայրիկի նախազգուշացման: Շատ անգամ երեքի փոխարեն 4—5 անգամ էինք խոտ տալիս, որ Մարալը մեկ շատ կաթ տա: Եվ Մարալը իրոք վարձահատույց էր լինում:

Այսպես շատ տարիներ անցան: Մեծացանք մենք՝ երեխաներս, մեծացավ նաև Մարալը: Կյանքը շատ փոխվեց: Քաղցի տարիները հուշ դարձան: Ու մի օր, երբ հավաքվել էինք ուտելիքով ծանրաբեռնված սեղանի շուրջը, հայրս թախիծով ասաց.

— Մարալը պառավել է, ատամ չի մնացել բերանում: Թե տանեմ սպանդանոցին հանձնեմ, խիղճս չի տալիս: Աչքիս առաջ պիտի մորթեն, սիրտս չի դիմանա: Թե, ասում եմ, ծախեմ, դա էլ խղճին մոտ բան չէ: Պառաված անասունը ո՞ւմ վրա սաղացնեմ:

Մի տխուր լռություն իջավ սեղանին: Երևի այդ պահին բոլորս հիշեցինք այն ծանր օրերը: Ախր Մարալը ո՞նց էր մեկ պահել էն նեղ օրերին:

Աշնան մշուշապատ օրերից մեկն էր: Հայրս գոմ մտավ ու թոկը Մարալի վիզը գցած, դուրս հանեց:

— Արի՛ քշի, տանենք,— ասաց ինձ ու աչքերը կախեց:

Մարալին տարանք, հայրս՝ առջևից, ես՝ ետևից: Երբ մեր բակից դուրս հանեցինք, Մարալը շրջվեց, նայեց գոմի կողմն ու խուլ բառաչեց: Երևի հասկացավ, որ վերջին անգամ է տեսնում մեկ, մեր տունը, իր գոմը և հիմա իր բառաչով հրաժեշտ է տալիս բոլորին: Այժմ հիշեցի շատ տարիներ առաջ հորս ասած խոսքերը.

— Ի՞նչ է, կարծում ես, որ անասուն է, բան չի հասկանո՞ւմ...



# ՎԱՐԺԵՑՐԱԾ

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ



Ամառանոցային քաղաքի զբոսայգում նստած էին Վիտյան և Գենան: Երկու օր էր, որ նրանք ծանոթացել էին: Վիտյան պեպենոտ էր: Մազերը պղնձագույն էին: Գենան գիրուկ էր, սպիտակին տվող մազերով: Նույն նստարանին, մի փոքր հեռու, նստած էր երրորդ տղան: Նրա աչքերը սև էին, թարթիչները երկար և հոնքերը միացած իրար: Նստարանի ծայրին նստած էր նաև մի ծերունի՝ երկար, սպիտակ մորուքով: Նրա գլխին թասակ կար, ձեռքին՝ հաստ ձեռնափայտ:

Գենան և Վիտյան զրուցում էին.

— Մեր գետը լայն է, նրա վրայով մոտորային նավակներ են անցնում:

— Իսկ մեր գետի վրա նավեր են լողում,— ասաց Գենան:

— Մեր քաղաքում հինգ կամուրջ կա:

— Իսկ մեզ մոտ՝ տասը:

— Մեր քաղաքում գետը նեղ է, ծանծաղ, ընդամենը երեսուն քայլ է,— խոսակցությանը խառնըվեց սևաչյան,— և ոչ մի մոտորային նավ չի անցնում, բայց մի անգամ նա այնպիսի խաղ խաղաց, որ մարդիկ դեռ երկար կհիշեն:

— Ի՞նչ խաղ խաղաց:

— Քաղաքը ջրով ծածկեց:

— Ա՜յ, դա ուրիշ բան է,— գլուխը տարուբերելով ասաց պապը:

— Այժմ գետը սանձահարել են, պապի՛կ,— ավելացրեց սևահերը:

— Ես տանը ընտանի շուն ունեմ,— մի փոքր անց ասաց Վիտյան:

— Բա՞ն ասացիր,— ընդհատեց նրան Գենան,— ընտանի շո՞ւնը որն է: Բոլոր շներն էլ ընտանի են: Ա՜յ, ես տանը ճագար ունեմ, նա իմ հրամանով է շարժվում, ետևի ոտքերի վրա կանգնած՝ պարում է...

— Արդեն երկրորդ տարին է, ես ընտանի մողես ունեմ...— ասաց սևահերը:

— Չէ մի՛, ընտանի մողե՜ս... Այդպիսի բան երբեք չի եղել,— շեկ թարթիչներով աչքերը կկոցելով ծիծաղեց Վիտյան:

— Իսկ որտե՞ղ ես պահում նրան,— հարցրեց Գենան:

— Գրպանումս,— ասաց սևահերը՝ զգուշությամբ ձեռքը շալվարի գրպանը դնելով:

Գրպանում ինչ-որ բան շարժվեց: Վիտյան և Գենան չռած աչքերով նայում էին սևահերի գրպանին:

— Դու այդտեղ մողե՞ս ունես,— զարմանքով հարցրեց Վիտյան:

Սևահերը գլխով արեց.

— Հապա ցո՛ւյց տուր:

— Խոստացեք հանգի՛ստ նստել, ո՛չ գոռալ և ո՛չ էլ խլել... Նա ճիչերից շատ է վախենում:

— Խոստանում ենք,— միասին պատասխանեցին տղաները:

— Ազնիվ պիոներակա՞ն:

— Ազնիվ պիոներական:

Սևահերը ոտքը երկարացնելով, գրպանից հանեց մողեսը:

Այն մեծ էր, ափի չափ, մեջքը փայլփլում էր



## ՓՈՔՐԻԿ ՀՈՎՎԻ ԵՐԳԸ

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ









Ժայռն ինձ աթոռ արի,
Շվիս երգեց անուշ
Ու գովքն արեց սարի,
Հանդի, հովի, դաշտի...
Ու նվագը հոսեց,
Կարկաչելով գնա՜ց...
Ամպը ձուլվեց սարին,
Հանդը լռեց հանկարծ:
Ու պար եկան աշխույժ
Մատներս նուրբ ու ժիր...
Պապանձվեցին բոլորն՝
Ինձ ունկնդիր:





## ՏԻԳՐԱՆԻԿՆ ՈՒ ԱՌՎԱԿԸ

*ՆՈՐԱՅՐ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

Տիգրանիկը խոտերում
Տեսավ մոլոր մի առվակ,
Ասաց.— Առվա՛կ իմ սիրուն,
Մի՛ թափառի դու մենակ:
Բանջարանոց ունենք մենք,
Ունենք նաև մի պարտեզ,
Ուր գնում ես՝ ինձ հետ եկ,
Ես բոլորը ցույց տամ քեզ:—
Առվակն ասաց.
— Ա՛յ Տիգրան.
Որպեսզի ես քեզ հետ գամ,
Պետք է մաքրես իմ ճամփան
Հազար խութ ու քարերից,
Հետո ասես՝ ա՛յ առվակ,
Դե, հետևի՛ր հիմա ինձ:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

## ՄՈՂԵՍԸ

Նկ. ՄԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

սաղափի նման: Մողեսն զբաղեցնում էր տիրոջ ձեռքի ամբողջ ափը, իսկ պոչը կախվում էր ներքև: Գլուխը բարձրացնելով, նա հանգիստ նայում էր սնահերին:

— Ա՛յ, դա ուրիշ բան է,— հայացքը մողեսին հառելով, ասաց ծերունին:

— Կյանքումս այդքան մեծ մողես չեմ տեսել, նույնիսկ չգիտեի, որ լինում են այդքան մեծերը,— հայացքը մողեսից չկտրելով՝ ասաց Վիտյան:

— Աշխարհում հայտնի է մողեսների 2700 տեսակ, իսկ մեզ մոտ՝ Սովետական Միությունում՝ 70 տեսակ,— բացատրելով սնահերը՝ ցուցամատով զգուշությամբ շոյելով մողեսի մեջքը:— Որոշ մողեսների երկարությունը ընդամենը մի քանի սանտիմետր է, իսկ կան և այնպիսիները, որոնք երեք մետրի են հասնում:

— Իսկ դու որտեղի՞ց գիտես,— հարգանքով նայելով մողեսի տիրոջը՝ հարցրեց Գենան:

— Կարդացել եմ:

— Մի քիչ գործի է նման,— ասաց Գենան ժպտալով, ճպճպացնելով ճեփ-ճերմակ թարթիչները:

— Սիլվա՛,— կանչեց տերը, և մողեսը ավելի բարձրացրեց գլուխը:

— Ուրեմն Սիլվա են կոչում,— ինքնիրեն ասաց ծերունին,— ապրեցի մինչև խոր ծերություն և վիճակվեց տեսնել վարժեցրած մողես:

— Ի՞նչ է քո անունը,— վերջապես հարցրեց Վիտյան:

— Իմ անունը Արեգ է,— սիրով պատասխանեց սնահերը:

— Այ թե ես մի այդպիսի մողես ունենայի՜,— հառաչեց Գենան:

— Ես նրան քեզ կնվիրեի, բայց դու ինքդ ես տեսնում, թե որքան է նա ինձ ընտելացել: Ես նրան լավ եմ ուսումնասիրել և գիտեմ նրա բնավորությունը:

— Սիլվա՛, մտի՛ր գրպանս,— հրամայեց Արեգը, և մողեսը արագորեն սողաց տիրոջ գրպանը:

— Ա՛յ, դա ուրիշ բան է,— համարյա գոռաց ծերունին:

— Արդեն ուշ է, Սիլվային կերակրելու ժամանակն է, ցտեսությո՛ւն,— տեղից վեր կացավ Արեգը:

— Վաղը էլ ե՞կ,— բացականչեցին տղայի հետևից:

— Կգա՛մ,— ծիծաղելով պատասխանեց Արեգը:



# ԿԱՔԱՎԻ ՆՎԻՐԱԾ ՁՄԵՐՈՒԿԻ ԿՈՐԻԶԸ

ԳՐԻԳՈՐ ԲԱԼԱՍԱՆՅԱՆ

*Գրիգոր Բալասանյանը «Հայաստան» հրատարակչությանն է ներկայացրել «Մեծի ասույթ զրույցները» մանկական գրքի նոր, լրացված տարբերակը: Այդտեղ զետեղված են փոքր-ինչ պարծենկոտ ու չափազանցություններ սիրող, բայց և բարի ու խորաշեն Մեծերունու հեքիաթանման պատմությունները մարդկային գեղեցիկ հատկությունների՝ հայրենասիրության, ուրախության, սիրո ու հավատարմության, ազնվության ու շիտակության մասին: Տպագրում ենք այդ զրույց-հեքիաթներից մեկը:*

...Մի տարի Միջի յուրղում տավար եմ պահում: Կլինեմ տասնհինգ-տասնվեց տարեկան: Գյուղից, ժողովրդից կտրված, խնը անասուններն են, մեկ էլ շվին է, որի վրա լավ նվագում եմ: Մի ընկեր էլ ունեմ, ինձնից մի քանի տարով մեծ, բայց նախանձ ու չար, դրա համար էլ անունը չեմ ասում: Համ էլ վաղուց չկա, նախանձն էլ կերավ նրան...

Ճար չունեմ, հետն ընկերություն եմ անում, ուրիշ մարդ չկա, ես եմ ու ինքը:

Մի մեծ կաղնի կար, միշտ դրա տակ էի նստում, նվագում կամ քնում: Մի օր էսպես նստել եմ էդ ծառի տակ: Ծառի վրա ծտերը երգում են իրենց համար, բայց զգում եմ, որ տխուր են երգում: Մեկ էլ վերևից մի կաքավի ճուտ ընկավ ուղիղ գիրկս: Վիրավոր է, թևը կոտրած է: Ծվծվում է, խեղճ-խեղճ ինձ է նայում: Էնպես էլ փափուկ ճուտ է, մի հավի չափ կլինի: Հենց էդ ժամանակ էս ընկերս եկավ: Ա՛ Մեծ, ասում է, էս ինչ լավ բան է, սոված ենք, ուտելու էլ բան չունենք, կրակ վառե՞մ, հարցնում է: Ասացի՝ չէ, կրակը պետք չի: Սա թե՝ բա հո հում չե՞նք ուտելու: Ասում եմ՝ այ տղա, բա էս վիրավոր ճտին ո՞նց ուտենք, խիղճ չունես դու, յո՞ւմ ես, ասում եմ, մերը ոնց է վախասուն դրել ծառի վրա: Աղա, ասում է, շաչ-շաչ մի խոսա, սոված ենք, տուր միկը պոկեմ: Չթողեցի: Մի շորի կտորով սրա կոտրած թևը կապեցի, էս տղային վերցրի գնացինք: Մտածում եմ, թե մերը կգա, տիրություն կանի իր ձագին: Երեկոյան կողմ էդ ծառի տակով անցնելիս նայեցի, կաքավի ճուտն արդեն չկար: Ասում եմ ընկերոջս, տեսա՞ր ինչ՝ լավ բան արեցի, մայրը տարել է, կապրի ճուտը, կուրախացնի իր ծնողին, որ ուտեինք, էլ էս չէի՞նք մնալու: Էս ընկերս էլի փնթփնթաց, ուրիշներն, ասում է, կրակում սպանում են, չեն ափսոսում, դու խղճում ես իր ոտքով քո դուռը եկած թռչունին:

Անցավ մի քանի օր: Էլի էդ կաղնի ծառի տակ նստած ինձ համար տրեխ եմ պատրաստում: Ծառի վրա ծտերը երգում են ուրախ, էնպե՜ս են ծլվլում: Ու ես, սատված վկա, հասկանում եմ, թե սրանք ինչ են ասում.— Մենք քեզնից շատ ենք շնորհակալ, ասում են, որ փրկեցիր մեր քրոջը,— էս ճտերն են ասում: Մայրն էլ թե՝ դու լավ մարդ ես, ես քո լավությունը չեմ մոռանա...

Էսպես ծլվլում են, շնորհակալություն են ասում, իմ սիրտն էլ, ճիշտն ասած, փառավորվում է, մտածում եմ, թե էս ի՜նչ լավ բան է լավություն անելը, բա չար մարդն ինչի՞ է պետք:

Մի օր էլ էդ ծառի տակ շվի եմ նվագում, հետո հոգնեցի քնեցի: Երազումս էլի էդ կաքավի հետ եմ, իբր թե եկել է ուսիս նստել ու ականջիս կամաց ասում է՝ մայրս քեզ համար ձմերուկի կորիզ է ուղարկել, սա էլ մեր լավությունն է: Կտանես, ասում է, մի թաքուն տեղ կցանես, լավ բերք է տալու: Քո ընկերոջը չասես, ասում է, նա կգողանա քո ձմերուկը: Միայն թաքուն տեղ ցանիր, հա՛...

Հենց արթնացա, մոտիցս մի կաքավ թռավ: Նայեմ տեսնեմ կրծքիս մոտ մի սև բան է պսպղում, ձմերուկի կորիզ է, խսկական կորիզ: Մնացել եմ շվար, ի՞նչ անեմ: Իսկ ծտերը ծառին ծլվլում են: Մտածում եմ, տարվա էս ժամանակ ձմերուկ կբուսնի՞, էն էլ էս սարի գլխին, աշնան կողմերն էր, արդեն գիշերները ցուրտ էր լինում: Իսկ ձմերուկը տաքն է սիրում: Ասացի՝ հիմա ի՞նչ եմ կորցնում, իմ բարեկամ կաքավի ցանկությունը պիտի կատարեմ: Էս ձմերուկի սերմը տարա մեր յուրղից ահագին հեռու մի մեծ քարի կողքին թաղեցի, չորացած խոտով էլ ծածկեցի, եկա:

Անցավ մի քանի օր: Էնքան եմ պարմացած ու անհանգիստ, որ քիչ է մնում էդ ընկերոջս պատմեմ, ինձ զոռով եմ պահում: Կաքավն ասել է՝ թաքուն տեղ ցանիր կորիզը, ուրեմն իրավունք չունեմ ուրիշի ասելու: Լռում եմ:

Մի գիշեր վեր կացա, գնացի «բոստանս» տեսնելու: Խոտերը ետ տարա ու ինչ տեսնեմ, ա՛ խոխեք, ձմերուկս բռնել է, արդեն մի խնձորի չափ կլինի: Բայց պարմանալին էն է, որ էդ խնձորը ձմերուկի նման չի, դեղին է, էն լավ հասած դդումի գույնի: Վախենում եմ, թե ձեռք տամ, ասում եմ՝ կփչացնեմ: Նորից խոտով ծածկեցի, եկա տուն: Էլի պայթում եմ, բա էս հրաշք բանի մասին ո՞նց չպատմես ուրիշին: Ընկերս էլ ոնց որ բան-ման է նկատել: Անհանգիստ ես, ասում է, Մեծլում, մի տեսակ ոնց որ նիհարել ես, հո հիվանդ չե՞ս: Քիչ է մնում, թե ասեմ՝ տո, անաստված, գիշերները աչք չեմ փակում, բա հիվանդը ո՞նց է լինում...

Օրեր-շաբաթներ անցան: Ես գիշերները թաքուն ստուգում եմ. դեղին ձմերուկը տեղն է, ու ինչպե՜ս է մեծանում, արդեն մեր էն մեծ ձմերուկների չափ կլինի: Մտածում եմ, բա ե՞րբ պիտի պոկեմ թաղից, թե՞ սպասեմ, մինչև կաքավը մի բան կասի:

Եվ խսկապես, մի գիշեր ասաց՝ ձմերուկը պոկի՛ր թաղից, հենց տեղնուտեղը կտրիր, մեջը ինչ որ կլինի, կհավաքես, կտանես գյուղ, ձեր տուն:

Գնացի: Կտրեցի էս դեղին ձմերուկն ու ինչ տեսնեմ, մեջը լիքը ոսկի, խսկական ոսկի տասանոցներ: Լցրի գրպաններս ու հենց էդ տեղից ուղիղ իջա գյուղ: Հերս, օղորմի իրեն, ուլում էր ինձ ծեծի, շա՜ն լակոտ, ասում է, ով գիտի գողացել ես, ինձ հարամ ապրանք պետք չի՛: Մի կերպ սրան հավատացրի, որ գտել եմ, Մեծ քարի տակից եմ հանել:

Դե, կաքավի պատմությունը տանն էլ չէի անում, որ գաղտնիք է, ասում եմ, թող գաղտնիք էլ մնա: Էդ ոսկով հետո ահագին անասուն առանք, խաղողի այգի գցեցինք, տուն շինեցինք, մի խուրջով սկսեցինք կարգին ապրել:

Հերս, հոգին լույս դառնա, մի լավ գործ էլ արավ: Հենց էդ առավոտ ինձ հարցնում է՝ Մեծլում, մեր գյուղում ամենաաղքատ մարդը ո՞վ կլինի: Ասացի՝ Բազրատի Նախիշունը, մարդը մեռած, հինգ երեխայի հոգսը ուսերին, երեխաներից մեկն էլ իմ ընկերն է, շատ դժվար են ապրում: Հայրս թե՝ ճիշտ

*ես ասում, Մեծյուս, լավ չի՞ լինի, որ էս ոսկով մի քիչ էլ նրանց օգնենք: Ասացի՝ ա հեր, էդ ինչ լավ բան ես ասում, մեր արարքից էն խմաստուն կաքավն էլ գոհ կմնա: Էդպես էլ արինք. մի քանի ջվալ ցորեն առանք ու սայլով ուղարկեցինք Նախշունի տուն, ձմեռվա պաշար էր: Խեղճ կինն ուրախությունից լաց եղավ ու ո՞նց էր օրհնում մեզ...*

*Գյուղում երկու օր մնալուց հետո նորից սար բարձրացա:*

*Էս ընկերոջս ասացի՝ մորս կարոտել էի, գնացի տեսնելու: Սա, իհարկե, չհավատաց: Ինձ էս հարցակոխ է անում՝ ճիշտն ասա, ի՞նչ է պատահել, ինչի՞ գյուղ գնացիր գիշերվա կեսին. հիմա շատ ուրախ ես, պատճառն ի՞նչ է: Տեսավ, որ բան չեմ ասում, սա թե՝ ես գիտեմ քո գաղտնիքը, իզուր ես թաքցնում: Ասում եմ՝ ի՞նչ գիտես: Ձմերուկդ գտել եմ, ասում է: Պարզվեց, որ սա մի օր կորած անասունի հետևից գնացել է ու էդ ձմերուկի կլեպները տեսել: Ես, ասում է, խելույս իմացա, որ դա քո գաղտնիքն է, և, ո՛վ գիտի, կապված է էն կաքավի հետ: Պատմեցի կիսատ-պռատ, էլ ճար չունեի: Մենակ ոսկին քիչ ցույց տվի, ասացի՝ աչքը ծակ մարդ է, նախանձից կտրաքվի: Երկու հատ ոսկի ասացի միայն: Հիմա սա կպել է ինձ՝ բա դու ինչ ընկեր ես, ասում է, որ մեկն ինձ չտվիր: Ասում եմ՝ ախր կաքավն ինձ համար էր ուղարկել, էն կաքավը, որի միսը դու ուզում էիր ուտել: Միևնույն է, ասում է, դու ինձ պարտք ես, կամ ոսկիս տուր, կամ էդ կորիզից մի հատ, թե չէ գյուղում քեզ խայտառակ կանեմ: Ասում եմ՝ կորած ձմերուկի տեղը գիտես, գնա էնտեղից կորիզ վերցրու: Չկա, ասում է, նայել եմ տաս անգամ, ոչ մի հատ չկա: Մտածում եմ՝ ինչ անեմ սրան: Մեկ էլ խելքիս մի բան փչեց. ասացի գնա էն կաղնի ծառի տակ պառկիր քնիր, թե կաքավը ուզեց, մի հատ կորիզ էլ քեզ կտա: Ա՛յ տղա, երեկոյան մեկ էլ տեսնեմ սա գոռալով գալիս է: Մեծյո՛ւս, կորիզը ճարել եմ, կաքավը ինձ էլ կորիզ տվեց, քնած տեղից վեր կացա, ասում է, տեսնեմ դոշիս դրած:*

*Սա էս կորիզը թաղեց հողի մեջ, հենց էդ կաղնի ծառի տակ: Ինձ էլ զգուշացնում է՝ էս ձմերուկն էլ իմն է, ասում է, դու բաժին չսպասես, հա՛: Թող բախտս բերի, ոսկին շատ լինի: Ես, ասում է, ոսկիները կտանեմ, ինձ համար մի պալատ կշինեմ, հարևան գյուղի բեկի աղջկան կառնեմ, ի՞նչ կյանք եմ քաշելու: Դռանս մի տասը ծառա կպահեմ, գյուղի հողերն ու անասունները կառնեմ, թող բոլորն իմ ձեռքին նայեն:*

*Անցավ մի ամսի չափ: Էս ձմերուկը մեծացավ օր-օրի վրա, այ տղա, քանի մեծացավ, էնքան սևացավ գույնը: Մտածում եմ՝ թե սա նույն ձմերուկն է, բա նրա պայծառ դեղնությունն ո՞ւր է:*

*Մի օր էլ սա թե՝ Մեծի, էլ համբերություն չունեմ, որ սպասեմ, ձմերուկս կտրում եմ:*

*Կտրեց: Պա՜հ, էդ ինչ պատահեց: Մեջը լիքը սև-սև օձեր էին, բարակ ու երկար-երկար: Երևի մի հարյուր հատ: Սրանք դուրս թափվեցին ու ընկան էս տղայի ետևից: Սա բղավում է ու փախչում... Ես մնացել եմ քար կտրած: Օձերը նրան քշած տարան Ծիծի կողմերը, էնտեղ մի խոր ձոր կա, է՛, որ վերևից նայում ես, աչքերդ շաղվում են, էս տղան գնաց դեպի ձորը... Էն գնալն էր, որ գնաց:*

*Իսկ կաղնի ծառի վրա կաքավներն ուրախ ծլվլում էին:*

*Թևավոր խոսքեր*

## ՍՖԻՆՔՍԻ ԱՌԵՂԾՎԱԾԸ

Երբ լսում եք «սֆինքս» բառը, դուք նախ և առաջ պատկերացնում եք հին եգիպտական արձանները՝ կես-մարդ, կես-առյուծ կերպարանքներ՝ բազմած քարե պատվանդանին: Լենինգրադում, Նևայի ափին, հենց այդպիսի սֆինքսներ են դրված, որոնք բերվել են 1832 թվականին «հինավուրց Եգիպտոսի Թեբեից»: Այդ արձանների դեմքին մի խորհրդավոր խաղաղություն կա, ինչ-որ արհամարհող զոռոզություն. թվում է, թե «սֆինքսի առեղծվածը» կապված է հենց դրանց հետ: Իսկ իրականում դա վերաբերում է բոլորովին այլ՝ հունական առասպելին:

Սֆինքսը, պատմում է հունական առասպելը, կնոջ դեմքով, առյուծի իրանով և գիշատիչ թռչնի թևերով մի հրեշ էր: Նա նստած էր Թեբե քաղաքի պարիսպների մոտ, մի ժայռի վրա և ամեն անցորդի առաջարկում րէ այս հանելուկը. «Այն ո՞վ է, որ առավոտյան քայլում է չորս ոտքով, կեսօրին՝ երկու, իսկ երեկոյան՝ երեք ոտքով»: Հանելուկը չլուծողները նույն պահին սպանվում էին:



*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

Միայն մի մարդ, Թեբեի արքայորդի Էդիպը, գտավ ճիշտ պատասխանը. «Մարդը մանուկ հասակում չորեքթաթ է քայլում, հետո քայլում է երկու ոտքով, իսկ ծեր հասակում հենվում է ձեռնափայտին»: Հուսահատ սֆինքսը ժայռից նետվում է ծովն ու կործանվում:

Թվում է, թե խոսքը վերաբերում է նույն հրեշին. այստեղ էլ հիշվում է Թեբե անունը: Բայց Հելլադայի Թեբեն և Եգիպտոսի Թեբեն միանգամայն տարբեր քաղաքներ են: Երկար դարեր «սֆինքս» ասելով հասկանում են խորհրդավոր, անհասկանալի մարդկանց, իսկ «սֆինքսի առեղծված» նշանակում է անըմբռնելի, դժվարին խնդիր:



# Հովսեփ Էմին

*(Ծննդյան 250-ամյակի առթիվ)*

1751 թվականի փետրվարի 14-ին Հնդկաստանից Անգլիա է մեկնում «Ուալփոլ» առագաստանավը: Նավը պատկանում էր անգլիական արևելա-հնդկական ընկերությանը: Նավաստիների մեջ կային երկու հայ երիտասարդներ՝ Ջան Մասեհը և Հովսեփ Էմինը: Ուղևորությունը չափազանց դժվարին էր ու վտանգավոր: Նավը շատ հին էր և նրա մաշված կողերը հազիվ էին դիմանում ալեբախությանը: Ճանապարհին նավի հատակը ճեղքվածք տվեց և ջուրը սկսեց լցվել ներս: Նավաստիները գիշեր-ցերեկ ջրհաններով դուրս էին թափում ջուրը: Այդպես հասան Սուրբ Հեղինե կղզին: Այստեղ ափ դուրս եկան և նորոգեցին նավը: Վերին աստիճանի հոգնեցնող այդ ճանապարհորդությունը մինչև Անգլիա տևեց ուղիղ յոթ ամիս:

Հայտնի չէ, թե ի՞նչ նպատակով էր Ջան Մասեհը մեկնել Լոնդոն, բայց գիտենք, որ մյուս երիտասարդը՝ 25-ամյա Հովսեփ Էմինը Անգլիա էր գնացել զինվորական գործ սովորելու: Նրա նպատակն էր ձեռք բերել զինվորական գիտելիքներ, մեկնել Հայաստան, որն այն ժամանակ տառապում էր օտար լծի տակ, և կազմակերպել հայրենի երկրի ազատագրումը: Խանդավառ և ռոմանտիկ այդ երիտասարդը երբեք չէր եղել Հայաստանում, նրա մասին կարդացել էր գրքերում ու լսել հայրենակիցներից, բայց պատրաստ էր իր կյանքը զոհաբերել հայրենիքի ազատագրմանը: Էմինի հայրը ուզում էր որդուն դարձնել վաճառական, բայց որդին լսել չէր ուզում այդ մասին և Անգլիա էր մեկնել առանց հոր համաձայնության:

Իրանի Համադան քաղաքում ծնված և Հնդկաստանի Կալկաթա քաղաքում ապրած այդ երիտասարդի համար չափազանց դժվարին էին Լոնդոնում գտնվելու սկզբնական ամիսները: Ապրուստի ամենահամեստ միջոցներ հայթայթելու համար նա ստիպված էր սևագործ բանվորություն, երբեմն էլ բեռնակրություն անել, բայց և այնպես կարողացավ ընդունվել Վուլվիչի արքայական զինվորական ակադեմիան: Այստեղ նա հմտանում էր հրետանային գործի և ամրոցաշինության մեջ: Պատերազմ վարելու գործնական գիտելիքներ ձեռք բերելու համար 1757 թ. Էմինը մեկնում է Գերմանիա՝ մասնակցելու անգլո-պրուսական զորքերի կողմից Ֆրանսիայի դեմ մղվող պատերազմին:

Անգլիա վերադառնալուց հետո Էմինը փորձեր է կատարում անգլիական պետական գործիչներին հետաքրքրելու Հայաստանի ազատագրման իր ծրագրով և ստանալու նրանց օժանդակությունը: Սակայն շուտով պարզվում է, որ հայկական պետականության վերականգնման նրա ձգտումները հակասում են Անգլիայի շահերին: Հ. Էմինը 1759 թ. ծովային ճանապարհով մեկնում է Ալեքսանդրեթ, այնտեղից էլ՝ Հալեպ: Այստեղ նա գնում է մի քանի ձի, վարձում հայ օգնականներ և ճանապարհ ընկնում դեպի Հայաստան:

Հովսեփ Էմինի դեպի Հայաստան կատարած առաջին ուղևորությունը ձմռանն էր: Ամեն ինչ ծածկված էր ձյան հաստ շերտի տակ, և նա առաջ էր գընում քարտեզի ու կողմնացույցի օգնությամբ: Մեկ ամիս անց նա հասնում է Էրզրում, այնտեղից էլ Բայազետի վրայով՝ Էջմիածին: Ճանապարհի գյուղերում Էմինը ազատագրական պայքարի կոչ էր անում հայ գյուղացիներին: Հայաստանում Էմինը հնարավորություն է ունենում ավելի մոտիկից ծանոթանալու հայկական կյանքին, Անդրկովկասի քաղաքական վիճակին: Այդ ծանոթությունը ստիպում է նրան փոփոխություն մտցնելու իր ծրագրերի մեջ: Եթե նախկինում նա կարծում էր, որ հնարավոր կլինի Ղարաբաղի հայ մելիքների և Վրաստանի օգնությամբ ազատել հայրենիքը, այժմ համոզվում է, որ այդ բանը կարող է անել միայն ռուսական կայսրությունը: Նա որոշում է մեկնել Ռուսաստան, բայց դրա համար ըստիպված է լինում նույն ճանապարհով վերադառնալ Անգլիա, համապատասխան հանձնարարականներ ձեռք բերել և ապա մեկնել Պետերբուրգ: Ռուսական մայրաքաղաքում համակրանքով են վերաբերվում Էմինին, պետական գործիչները և ինքը՝ Եկատերինա Երկրորդ կայսրուհին դրական վերաբերմունք ունեին նրա ծրագրերի նկատմամբ և պատրաստ էին օգնելու նրան, բայց ժամանակը դեռևս հասունացած չէին համարում այդ գործը սկսելու համար:

Պետերբուրգից Էմինը մեկնում է Վրաստան, լինում է Հերակլ 2-րդ թագավորի մոտ, մասնակցում վրացական երկիրը օտար հարձակումներից պաշտպանելու գործին: Նա մեծ աշխատանք է տանում հայերի ազատագրական շարժումը կազմակերպելու ուղղությամբ: Թուրքական լծի տակ գտնվող Արևմըտյան Հայաստանում նա նախապատրաստում էր զինված ապստամբություն: Բայց քաղաքական դրությունը ամենևին նպաստավոր չէր դրա համար և 1766 թ. գարնանը Էմինը ըստիպված է լինում Իրանի և Իրաքի վրայով վերադառնալ Հնդկաստան:

Երկար թափառումներից հետո 1773 թ. Էմինը հասնում է Հնդկաստանի Մադրաս քաղաքը, որտեղ այդ ժամանակ մի խումբ հայրենասեր հայեր Շահամիր Շահամիրյանի գլխավորությամբ լուրջ աշխատանքներ էին ծավալել Հայաստանի ազատագրման և հայկական պետություն ստեղծելու գաղափարը տարածելու ուղղությամբ: Նրանք հիմնադրել էին հայկական տպարան և հրատարակում էին Հայաստանի ազատագրման և այնտեղ ստեղծվելիք հասարակական կարգի վերաբերյալ գրքեր: Անհաջողությունները չէին ընկճել Էմինին, նրա վըճռականությունը և հայրենիքն ազատագրելու մեծ փափագը ոգևորում են նաև Մադրասի խմբակի անդամներին, նրանք որոշում են Էմինի տրամադրության տակ դնել դրամական մեծ միջոցներ՝ Հայաստանը ազատագրելու զորախմբեր ըստեղծելու համար: Սակայն ձախողվում է նաև այս մտահղացումը: Էմինն այնուհետև Բոմբեյի ու Բասրայի վրայով անցնում է Բաղդադ: Նա ուզում էր Սպահանի վրայով մեկնել Հայաստան, բայց այդ բանը հայտնի է դառնում պարսիկ իշխանավորներին և թույլ չեն տալիս:

Հովսեփ Էմինը հայ առաջադեմ հայրենասեր գործիչ էր, մինչև իր կյանքի վերջը նա երազում էր հայրենի երկրի ազատության մասին, որը նրա կարծիքով հնարավոր էր իրագործել ռուսական պետության օգնությամբ: Երբ 1780 թ. ռուսական կայսրությունը ցանկանում էր իրագործել պարսկական արշավանքը, Պետերբուրգից նամակ են ուղարկում Էմինին և առաջարկում մասնակցել Հայաստանի ազատագրմանը: Այդ նամակը Էմինին է հասնում 10 տարի հետո, բայց նույնիսկ այդ ժամանակ էլ 65-ամյա Էմինը հայտնում է, որ ինքը պատրաստ է իր երկու որդիների հետ մեկնել Ռուսաստան և մասնակցել այդ արշավանքին:

Մեծ հայրենասեր Հովսեփ Էմինը վերջին տարիները անց կացրեց Կալկաթայում: Անգլերեն լեզվով նա գրեց իր կյանքի պատմությունը, որը 1792 թ. հրատարակվեց Լոնդոնում: Էմինը մահացել է 1809 թ.: Նրա մարմարե գերեզմանաքարի վըրա, որը գտնվում է Կալկաթայում, փորագրված են թնդանոթներ և թմբուկներ, որովհետև հայրենիքի ազատագրումը նա կապում էր միայն զինված պայքարի հետ:

*ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*
*Պատմական գիտությունների թեկնածու*



Կիրովականի «Եղնիկ» ճամբարի պիոներները դեղաբույսեր հավաքելիս

Լուսանկարը՝ ԷՄԻՆ ՍԱՖԱՐՅԱՆԻ

## ԱՆՏԱՌԱՅԻՆ ԴԵՂԱՏՈՒՆ

«Եղնիկ» ճամբարը անտառի մեջ է, շուրջը խշշացող ծառեր, անուշաբույր թփեր, և ծաղիկնե՜ր, ծաղիկնե՜ր...

— Եկեք դեղաբույսեր հավաքենք,— մի օր առաջարկեց պիոներներից մեկը:

Մանկավարժներ Մերուժան Սարգսյանը և Սամվել Ղազարյանը հավանություն տվեցին «Անտառային դեղատուն» օպերացիային: Շուտով բոլոր ջոկատները հանձնարարություններ ստացան՝ դեղաբույսեր հավաքել իրենց ամրացված անտառահատվածներում: Սակայն լավ չէին ճանաչում դեղաբույսերը: Նրանց օգնության հասան Կիրովականի կենտրոնական դեղատան աշխատակիցները: Ճամբար գալով՝ կրույցներ անցկացրին մանկական մի շարք հիվանդությունների և ճամբարի շուրջն աճող դեղաբույսերի ու նրանց բուժիչ հատկությունների մասին: Պիոներները ուշադիր լսեցին նրանց, իմացան ինչպես ճանաչել և հավաքել դեղաբույսերը: Մեկ շաբաթ շարունակվեց օպերացիան: Ամեն օրվա հավաքած դեղաբույսերը խնամքով չորացվում էին: Շաբաթվա վերջում 25 կգ չորացված դեղաբույս հանձնվեց Կիրովականի կենտրոնական դեղատուն: Դեղատան ղեկավարությունը պիոներներին շնորհակալություն հայտնեց այդ օգտակար աշխատանքի համար

## ՃԱՄԲԱՐԻ ՑՈՒՑԱՍՐԱՀԸ

Արայիկը ճամբարային փոքրիկ արհեստանոցում, թիթեղի վրա գծեր է քաշում, ապա հատուկ մեխերի միջոցով ձև տալիս:

— Դրվագողների խմբից է,— ներկայացնում է «Շինարար» ճամբարի պետ Ջեմս Բաղալյանը:— Քառասուն տղա և աղջիկ է ընդգրկված այդ խմբակում:— Ընկեր Բաղալյանը հրավիրում է մեկ հարևան սենյակը, որը փոքրիկ ցուցասրահ է պարզապես, ուր ներկայացված են ճամբարի շնորհալի սաների կատարած դրվագումները, կոճղերից պատրաստված քանդակները և մատիտանկարները:

— Ճամբարականները հատկապես սիրում են դրվագել,— ասում է ավագ ջոկատավար Լևոն Զարգարյանը: Հաճույքով են դիտվում Սեյրան Եգանյանի «Վարորդը», Արսեն Ռաֆայելյանի «Առյուծին հաղթողը», Արայիկ Մաթևոսյանի «Նվագող տղան» դրրվագումները: Տղաների աշխատանքներին չեն զիջում աղջիկների՝ Նորա Դարբինյանի, Սիրուշ Գաբրիելյանի գործերը:

Դրվագողների խմբակը ղեկավարում է Յուրիկ Ռուսովը, նա ինքն էլ շնորհալի դրվագող է և սիրով իր փորձն ու գիտելիքները ուսուցանում է սաներին:

Ճամբարը միայն հանգստանալու վայր չէ, այստեղ պիոներները նաև ստեղծագործում են, կոփվում և մոտիկից ծանոթանում բնության հրաշալիքներին:

ԼԻԳԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

## Ա.Ն.Ս.Ո.Վ.Ո.Ր ՀԱՆԴԻՊՈՒՄ

Սաղարթախիտ ծառերը վարագուրել էին արևը, և զով էր անտառում: Ծառերի բներից ու շիվերից կառչելով՝ անցնում էի թեք լանջով: Հանկարծ ինչ-որ մեկը խիստ ձայնով հրամայեց.

— Կանգնի՜ր:

Ծառի բնին հենվելով ուզում էի շրջվել, որ տեսնեմ հրամայողին, մեկ էլ տագնապով նկատեցի, որ շրջապատված եմ կիսամերկ նիզակավորներով: Նրանց մարմինն ու դեմքը ծածկված էր տարագույն ներկերով, իսկ գլխներին փետրազարդ գլխարկներ կային: Եթե մի փոքր բարձրահասակ լինեին, կարելի էր կարծել, որ հնդկացիների ինչ-որ ցեղախմբից են:

Մինչ ես աշխատում էի հասկանալ, թե ովքեր կարող են լինել այդ կարճահասակ վայրենիները և ինչ էին փնտրում անտառում, նրանցից մեկը, ըստ երևույթին ավագը, կարգադրեց.

— Անմիջապես հանձնե՜ք հեռագիրը:

— Հեռագի՜ր...— զարմացած ու շփոթված կրկնեցի ես:— Ի՞նչ հեռագրի մասին է խոսքը:

— Նեպտունի հեռագիրը, որը պետք է հասցնեիք անտառի մյուս ծայրը:

Եթե ավագը այնպես լուրջ ու խիստ չխոսեր, կմտածեի, որ կարճահասակ վայրենիները կատակ են անում: Բայց ո՛չ, իմ շուրջը սեղմվող նիզակների օղա-

կը պահանջում էր անհապաղ պատասխանել: Սակայն ի՞նչ պատասխանեի, երբ նրանց պահանջը մտքից ու իրականությունից հեռու բան էր: Որքան ավանդությունից ինձ հայտնի է, Նեպտունը ջրերի և ծովերի աստվածն է: Ի՞նչ է կորցրել նա այս անտառներում: Այդպես էլ բացատրեցի նրանց և վերջում ավելացրի.

— Այնպես որ ինձ հանգիստ թողեք, խնդրեմ:

Պատասխանելու փոխարեն նրանք հրամայեցին գնալ իրենց հետ: Անտառից դուրս գալուն պես, պիոներական ճամբարից ուրախ աղմուկ լսվեց.

— Ուռա՜, մեր բարեկամները բռնել են Նեպտունի սուրհանդակին:

Սակայն քիչ անց թե՛ «հնդկացիները» և թե՛ «Արծվիկ» ճամբարի պիոներները հիասթափվեցին, համոզվելով, որ ես Նեպտունի սուրհանդակը չեմ: «Վայրենիները», կամ ինչպես պիոներներն էին անվանում նրանց՝ «ճամբարի բարեկամ հնդկացիները», նորից անտառ բարձրացան, իսկ ճամբարի ավագ ջոկատավար Անահիտ Գալստյանն ասաց, որ տեղեկություն են ստացել, իբր Նեպտունը ջքախմբով դուրս է եկել շրջագայության և այն ճամբարը կայցելի, որի հետախույզներին հաջողվի բռնել նրա սուրհանդակին:

Ահա և «հնդկացիները» սուրհանդակին իրենց մեջ առած՝ ելան անտառից: Այս անգամ նրանք չէին սխալվել:

Երկար ու պիլ հնչեցին շեփորները, դղրդացին թմբուկները և անտառից մանրաքայլ դուրս եկավ Նեպտունը՝ շրջապատված ջրահարսերով: Ճամբարականները ցնծությամբ դիմավորեցին նրան: Նեպտունը ողջունեց բոլորին և եկավ թիկնեց ջրավազանի մոտ դրված գահին, իսկ ջրահարսերը տեղավորվեցին ավազանի չորս անկյուններում: Նա եռաժանիով հարվածեց գետնին և կարգադրեց սկսել մրցումներն ու խաղերը:

Մրցասպարեզ մտան նախ լողորդները, ցուցադրելով իրենց ուժն ու ճարպկությունը: Լավագույն լողորդները նվերներ ստացան ծովերի տիրակալից: Այնուհետև ջոկատներն ու օղակները սկսեցին մրցել նետաձգությունից, օղակների նետումից, թռիչքից, վազքից ու այլ մարզաձևերից:

Մարզական խաղերից հետո արծվիկցիները ջրերի տիրակալին ուրախացրին պիոներական երգերով, պարերով ու զվարճալի խաղերով:

Արդեն ուշ երեկո էր, Նեպտունը հրաժեշտ տվեց նրանց և գնաց... Գնաց մտավ ննջարաններից մեկը, իսկ մի քանի րոպե անց այնտեղից դուրս եկավ առաջին ջոկատի պիոներ Ալբերտ Անախասյանը:

ՎԱՉԱՆ ՄԽԻԱՅԱՆ

# ՆԻԿՈԼԱՅ ՂԱԶԱՐՅԱՆ

**«ՖՈՒՏԲՈԼ ՊԵՏՔ Է ՍԻՐԵԼ, ՖՈՒՏԲՈԼ ՊԵՏՔ Է ԽԱՂԱԼ, ԲԱՅՑ ՈՉ Ի ՎՆԱՍ ԴԱՍԵՐԻ»**



*Մեր ամսագրի խմբագրության հյուրն էր ՍՍՀՄ ֆուտբոլի 1973 թվականի չեմպիոն, 1973 և 75 թվականների գավաթակիր, ՍՍՀՄ սպորտի վարպետ Նիկոլայ Ղազարյանը: Երևանի «Արարատի» երկարամյա ձախ եզրային հարձակվողը (№ 11) թիմի «կոճղն» է, շուրջ 11 տարի իր թիմի պատիվն է պաշտպանում Սովետական Միության և արտասահմանյան մարզադաշտերում:*

*Նա սիրով պատասխանեց մեր մի շարք հարցերին, որոնք, անկասկած, կհետաքրքրեն նաև մեր ընթերցողներին:*



**— Ինչպե՞ս և ե՞րբ սկսեցիք ֆուտբոլ խաղալ:**

— Ինչպես բոլոր երեխաները: Գնդակը գլորել սկսեցի մանուկ հասակից: Իսկ երբ Բաքվից ընտանիքով փոխադրվեցինք Երևան, այստեղ, մեր բակում, կարծես աչքի ընկա: Մի օր էլ ընկերներիցս մեկն ինձ ներկայացրեց նախկինում ճանաչված ֆուտբոլիստ Արմո Դուրգարյանին, հայտնի դարպասապահ Սերգեյ Զատիկյանին և ժամանակին անուն հանած պաշտպան Մանուկ Սեմերջյանին: Ինձ ընդունեցին ֆուտբոլի պատանեկան դպրոցը, սկսեցի պարապել: Ասեմ, որ այդ դպրոցի սաներից են այժմ ճանաչված ֆուտբոլիստներ Ալեքսանդր Կովալենկոն և Սերգեյ Բոնդարենկոն: Նրանցից առաջինն անցյալ տարի հրաժեշտ տվեց մեծ ֆուտբոլին, իսկ երկրորդը ներկայումս ինձ հետ խաղում է «Արարատում»:

**— Ե՞րբ ընդունվեցիք «Արարատ»:**

— Սկզբում փոխարինող կազմում էի: 1965 թվականին փոխադրվեցի հիմնական կազմը և այդ տարի մասնակցեցի չորս խաղի: Առաջին հանդիպումը, որին ես մասնակցել եմ, Դոնի Ռոստովի բանակայինների հետ էր: Հիանալի ֆուտբոլիստ Վալտեր Անտոնյանը գեղեցիկ գոլ խփեց:

**— Իսկ դուք քանի՞սն եք խփել:**

— Երկրի առաջնության պաշտոնական խաղերում հանդես եմ եկել երկու հարյուր ութսունմեկ անգամ և խփել վաթսունվեց գոլ:

**— Կարո՞ղ եք հիշատակել խփած գոլերից լավագույնը կամ լավերը:**

— Լավագույնը կարող եմ: Դա 1972 թվականին էր, երբ Կիևում հյուրընկալվեցինք տեղի դինամոյականների մոտ: Ուկրաինացիների բարձրահասակ և ուժեղ պաշտպան Սոսնիխինի հետ մենամարտը շահեցի և խփեցի: Դարպասապահ Ռուդակովն անզոր էր փակելու գնդակի ճամփան:

**— Այս տարվա անձնական հաշիվը լավ եք սկսել, արդեն յոթ գոլի հեղինակ եք, և հույս ունենք, որ այդ թիվը կավելացնեք, որովհետև բոլոր մասնագետները պնդում են, որ վերադարձել եք ձեր լավագույն մարզավիճակին: Ֆուտբոլում ի՞նչ ցանկություններ եք ունեցել, որ չեն կատարվել:**

— Շատ ցանկություններ, իհարկե, անկատար մնացին: Բայց կկամենայի նշել երկուսը. ես գոլ եմ խփել երկրի շատ նշանավոր ակումբներին ու դարպասապահներին, բացի Մոսկվայի Բանակի կենտրոնական սպորտային ակումբից և Լև Յաշինից: Քանի՜ անգամ եմ մեն-մենակ դուրս եկել և՛ Յաշինի. և՛ բանակայինների դարպասապահների դիմաց, բայց վերջին վայրկյանին, երբ նրանք արդեն անզոր էին ետ մղելու հարվածը, գնդակը ցանց չի մտել: Եթե Յաշինին գոլ խփելու ցանկությունս այդպես էլ անկատար մնաց, որովհետև նա վաղուց է հրաժեշտ տվել մեծ ֆուտբոլին, ապա բանակայիններին գուցե դեռ հաջողվի խփել:

**— Ֆուտբոլը, ինչպես և ընդհանրապես սպորտը, ուժեղի, համարձակի խաղ է. այն և՛ ֆիզիկական, և՛ բարոյական, և՛, ասենք, նյարդերի պայքար է: Ասացեք, խնդրեմ, ինչպե՞ս են ընդունել ձեր ծնողները ձեր «ֆուտբոլային մուտքը» և այժմ ինչպե՞ս են նայում դրան: Պատահում է, խաղը չի ստացվում, ասենք, վնասվածք եք ստանում, դաշտում ձեզ հարվածում են, ընկնում եք...**

— Ասեմ (Ղազարյանը ցույց է տալիս աջ ձեռքի դաստակը): Միայն այստեղ չորս կոտրվածք կա: Բայց պետք է դիմանալ: Դաժան խաղ է ֆուտբոլը, ծույլերին ու թույլերին չի սիրում: Ծնողներս մինչև հիմա չեն փոխել իրենց կարծիքը. մայրս դեմ է մինչև այժմ, նա մեր խաղերը երբեք չի դիտում, հայրս, ընդհակառակը, երբ ազատ ժամանակ է ունենում, փոխարինողների հանդիպմանն էլ է գալիս ու անգամ մարզումներին: Իսկական ֆուտբոլասեր է: Փորձի՜ր հապա վատ խաղալ և երեկոյան տուն ներկայանալ:

**— Ի դեպ, ֆուտբոլասերների մասին: Ինչպիսի՞ք են ձեր և նրանց փոխհարաբերությունները, և ի՞նչ կասեք Երևանում, տվյալ դեպքում «Հրազդան» մարզադաշտում անցկացվող խաղերի մասին:**

— Սկսեմ վերջինից. «Հրազդանում» գրեթե միշտ ամենալավ մթնոլորտն է տիրում: Եվ գրեթե միշտ դաշտից, ֆուտբոլասերների ու արարատցիների վերաբերմունքից գոհ են հեռանում և՛ մրցակիցները, և՛ մրցավարները: Շատ մրցավարներ ուրախությամբ են համաձայնվում խաղեր վարելու «Հրազդանում»: Վստահ կարող եմ ասել, որ երևանցի մարզասերները գոհ են մնում լավ հանդես եկած թիմից, անկախ այն բանից, դա «Արարա՞տն» է, թե՞ նրա մրցակիցը: Նրանք սուլում են նաև մեզ, ընդհանրապես նրանց, ովքեր անկարգապահ են, խախտում են խաղի կանոնները, կոպտություն թույլ տալիս:

**— Դուք՝ արարատցիներդ, ո՞ր թիմերի հետ եք ավելի լավ խաղում:**

— Ովքեր լավ ֆուտբոլ խաղալ գիտեն, գրագետ են և՛ տակտիկապես, և՛ տեխնիկապես: Նրանցից կոպիտ ֆուտբոլ չես սպասի: Կարող եմ հիշատակել Մոսկվայի որոշ թիմեր (ինչպես՝ առաջներում «Տորպեդոն», «Սպարտակը»), Դնեպրոպետրովսկի «Դնեպրը», Թբիլիսիի «Դինամոն» (ո՛չ վերջին մի քանի տարիներինը): Հիշում եմ, օրինակ, երբ մի քանի տարի առաջ Թբիլիսիում 4:0 հաշվով հաղթեցինք տեղի դինամոյականներին, խաղից հետո մեր հանդերձասենյակ եկավ վրացիների թիմի և ՍՍՀՄ հավաքականի նախկին ավագ Մուրթազ Խուրցիլավան և անկեղծորեն շնորհավորեց մեզ: Դա սպորտսմենի արիության և վեհանձնության դրսևորում է:

**— Ֆուտբոլը ձեզանից շատ ժամանակ է խլում: Ի՞նչ եք անում ձեր ազատ ժամերին:**

— Ընթերցում եմ: Տանը լավ գրադարան ունեմ: Սիրում եմ գրականությունը և պատմությունը: Ես Խաչատուր Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի պատմության ֆակուլտետն եմ ավարտել: Սպորտից դուրս երկու երազանք ունեի. սովորել օտար լեզուներ և կիթառ նվագել: Եր-





կուսն էլ անկատար մնացին, որովհետև ֆուտբոլը խլեց ամբողջ ժամանակս։

**— Դուք արդեն քսանինը տարեկան եք։ Դեռևս որքա՞ն կուրախացնեք ձեր երկրպագուներին։**

— Երբ զգամ, որ այլևս օգուտ չեմ տալիս թիմին, բեռ եմ դառնում նրա համար, կհեռանամ։ Չեմ սիրում այն մարդկանց, ովքեր իրենց ասելիքն ասել վերջացրել են, բայց համառորեն մնում են, փակում նորեկների ճամփան։

**— Մեր վերջին հարցը. կաշվե գնդակը գրեթե բոլոր դպրոցահասակ երեխաների հրապուրանքն է։ Ի՞նչ խորհուրդ կտայիք նրանց. չէ՞ որ խաղերը հաճախ խանգարում են դասերին։**

— Ֆուտբոլ պետք է սիրել, ֆուտբոլ պետք է խաղալ, բայց ոչ դասերի հաշվին, ի վնաս դասերի։ Դասերը պատրաստելուց հետո թող խաղան ինչքան ուզում են։ Չի բացառվում, որ երեխան և՛ լավ սովորի, և՛ ժամանակ գտնի ֆուտբոլ խաղալու համար։ Բայց երբ տեսնում է, որ խաղը խանգարում է դասերին, տղնուտեղը պիտի թողնի խաղը և առաջին հերթին դասերով զբաղվի։ Ես այսպես եմ կարծում։ Սակայն, կրկնում եմ, լավ սովորող երեխան միշտ էլ ժամանակ կգտնի ֆուտբոլ խաղալու։

*Զրույցը վարեց մեր թղթակից*
*ՎԱՆԻԿ ՍԱՆԹՐՅԱՆԸ*

«Պիոներիս» փոստից

## ՕԳՆՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

Կոմերիտական կազմակերպության նախաձեռնությամբ, ամառային արձակուրդի օրերին, մեր դպրոցում կազմվել է աշակերտական-արտադրական բրիգադ։ Բրիգադում ընդգրկված շուրջ 150 աշակերտներ մասնակցում են ծիրանի բերքահավաքին, խոտի կուտակմանը, կանաչ կապին։ Միայն դպրոցականների ուժերով հավաքվել և մթերակայան է ուղարկվել 42 տոննա ծիրան, կուտակվել է 73 տոննա խոտ և 161 հեկտարի վրա կատարվել կանաչ կապ։

Աշխատանքային եռուն այս օրերին իրենց ծնողներից, ավագ քույրերից ու եղբայրներից ետ չեն մնում դպրոցականները՝ իրենց հայրենանվեր աշխատանքով։ Իսկ երեկոյան, երբ հարթավայրի վրա խնածում է խաղաղ երեկոն՝ դպրոցի բակային ճամբարն են հավաքվում դպրոցականները՝ պնկույց տալու իրենց օրվա աշխատանքների մասին, որին և հաջորդում է երգն ու պարը, ուրախ հանդեսները։

*ՆԱՐԻՆԵ ԽԱՉԱՏՐՅԱՆ*
*Հոկտեմբերյանի շրջանի Ա. Խանջյանի անվան սովխոզի միջնակարգ դպրոցի աշակերտական-արտադրական բրիգադի անդամ*

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 8 օգոստոս 1976 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 05803։ Պատվեր 1232։ Տպաքանակ՝ 74006։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 23/VIII 1976 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։





## ԾԻԱԾԱՆ

ՎԱՆԻԿ ՍԻՐԱԴԵՂՅԱՆ

Յոթ քույր են եղել,
Յոթ գեղեցկուհի,
Հագերով նմա՛ն,
Հասակներով նմա՛ն...

Միշտ են նրանք անձրևից հետո
Յոթ գույն շորերով
Ծաղկոտ դաշտերում ծաղիկներ քաղել...

Մի առավոտ էլ, անձրևից հետո,
Երկնի լազուրն է նրանց հմայել
Ու իր մոտ տարել:

Եվ այդ օրվանից յոթը քույրերը
Արևի,
Երկնի
Եվ անձրևների
Դուստրերն են դառել:

## ԱՄՌԱՆ ԵՐԵԿՈ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Հիմա գյուղի կապույտ կտուրների վրա
Իջնում է մաղված երկնի մաղից,
Եվ ծառերը բարակ ստվերների նման
Առուներն են մտնում [illegible]:
Ամռան երեկոյի շոգ ու անշարժ օդից
Ծաղիկները փակված մնում են ծոպ,
Եվ չոր քամի է գալիս չոր ու խանձված օդից.
Աղավնիներն անգամ չեն թռչում:
Երազում են նրանք մի քարավան ամպի,
Ամպի ալիքներով փրփո՛ւր, փրփո՛ւր,
Որ իր [illegible], [illegible] մարգարիտը թափի
Բլուրների վրա շոգ ու [illegible]:
Եվ հեռանա նորից [illegible] իր ճամփա,
Իր երկնային [illegible] [illegible],
Թեթևանա մի պահ [illegible], խանձված, [illegible]
Նաև [illegible] [illegible] կրակներից:

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ